# ՊԱՐՏԻԱՅԻՆ

ԼՅՈՒԴՎԻԳ ԴՈՒՐՅԱՆ

Այս գարուն բերող ծիծառի համար,
Այս հուրհեր մանկան ծիծաղի համար,
Կոթողի համար այս վեհաքանդակ,
Երկնքի համար ջինջ ու կապուտակ,
Այս կանաչաբուխ բարդենու համար,
Ցողից ժպտացող վարդենու համար,
Զինվորի համար այս վորացրված,
Գրքերի համար՝ արևով գրված,
Կառուցման համար այս գործարանի,
Շնորհակալ ենք, պարտիա՛, քեզանից:

Շնորհակալ ենք, որ հիմա ցնծում,
Ցորենի անծիր դաշտեր ենք հնձում,
Որ նոր ընթացք ենք տալիս գետերին,
Կապույտ դռները բացում եթերի,
Ջրերից քամում և՛ լույս, և՛ կրակ,
Եվ լույսից անգամ ճախրում ենք արագ,
Որ նոր վերելքի մեր հիմնն ենք երգում
Ե՛վ հողի վրա, և՛ տիեզերքում:

Շնորհակալ ենք նորից և նորից,
Ինչպես վավակը՝ հարազատ մորից,
Ինչպես ճոխ այգին՝ իր այգեպանից,
Ինչպես ճամփորդը՝ լավ ճանապարհից:
Շնորհակալ ենք, որ ապրում ենք, կանք
Քո ալ դրոշի ծփանքների տակ:
Դու մեծ տարել ես ու տանում ես վե՛ր,
Տալով նոր խոյանք, սուրացող թևեր:



Նկ. ՀԵՆՐԻԿ ՍԻՐԱՎՅԱՆԻ

ՀՈԿՏԵՄԲԵՐ
№ 10 1961 Թ.

ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ
33-ՐԴ ՏԱՐԻ




ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ
ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

# ՄԵՐ ԼԱՎ ԱՊԱԳԱՅԻ ՀԱՄԱՐ

*ՍԱՄՎԵԼ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ*

## ԿԱՆ ԲԱՐԻ, ԼԱՎ ՄԱՐԴԻԿ

Այդ օրը բոլորն անհամբեր սպասում էին հայրիկի գալուն: Մայրիկն ու երեք քույրերը տան շեմքին նստած, իսկ Պետյան՝ փողոցի անկյունում: Այսպես լինում էր ամեն անգամ, երբ հայրիկն աշխատավարձ պիտի ստանար: Հայրիկը սովորաբար գործարանից խանութ էր գնում և տան համար ուտելիք առնում: Երբ նա երևում էր փողոցում, Պետյան վազում էր նրան ընդառաջ, օգնում էր ուտելիքը տուն հասցնել: Հետո մայրիկը շտապ վառում էր հրագը, ու սկսվում էր ճաշը: Ամեն մեկը մի մեծ կտոր հաց էր ստանում և մի քառորդ՝ աղած ձուկ: Այսքանը, բայց Պետյայենց ընտանիքի համար դա արդեն տոն էր, իսկական տոն: Քիչ բան չէ, նրանք կշտանում էին, իսկ այդպես լինում էր միայն աշխատավարձի օրը:

Բայց այսօր հայրիկը, չգիտես ինչու, ուշանում էր: Գրեթե բոլոր բանվորները տուն էին դարձել հարբած, օրորվելով հայտնվեց նաև քեռի Եվդոկիմը, որ միշտ ուշ էր տուն գալիս:

Պետյան Եվդոկիմ քեռուց մի քիչ վախենում էր, դրա համար էլ որոշեց չհարցնել հայրիկի մասին, բայց Եվդոկիմն ինքը մոտեցավ տղային ու օրորվելով ասաց.

— Իսկ հայրիկի՞դ բռնեցին... այո՛... տարան ոստիկանատուն... Դո՛ւ, Պետյա, մայրիկիդ ասա... այո՛...

Հետո օրորվելով Եվդոկիմ քեռին հեռացավ: Պետյան մնաց տեղում քարացած: Նա դեռ կարգին չէր հասկանում, թե ինչ է կատարվել:

Քիչ հետո նա միայն ըմբռնեց տեղի ունեցածը և ճչալով վազեց տուն:

Տանը մայրիկը լաց եղավ մինչև ուշ գիշեր: Հարևաններն ու հայրիկի ընկերները եկել էին նրան հանգստացնելու: Նույնիսկ եկել էր քեռի Իգնատը, որ ավանի մյուս ծայրում էր ապրում:

— Դու, Մարիո՛ւշկա, մի՛ լա, լալով ոչինչ չե՛ս անի,— ասում էր նա:

— Ախր ի՞նչ է արել, որ բռնել են: Իմ Գավրիլը խելոք էր ու տասը մարդու գործ էր անում:

— Օգո՞ւտն ինչ, որ տասը մարդու գործ էր անում,— ասաց Իգնատ քեռին,— մեկ է, կոպեկներ էր ստանում:

Պետյան այդ երեկո շատ բան իմացավ: Նա իմացավ, որ գործարանատերը միշտ կտրել է հայրիկի և մյուս բանվորների աշխատավարձը: Ամեն չնչին բանի համար տուգանքներ է վերցրել և առանց վերջին չնչին կոպեկներն է առել նրանից: Նա իմացավ, որ եթե հայրիկն ստանար այնքան, ինչքան որ նրա աշխատանքի արդյունքն էր, իրենք լավ կապրեին, կարգին տուն կունենային: Իսկ այսօր այնքան տուգանք էին պահել, որ ստանալու բան չէր մնացել: Պետյայի հայրիկը բողոքել էր դրա դեմ, պահանջել էր իր աշխատավարձը, իսկ վերակացուն խփել էր նրան: Խփել էր ու սպառնացել, թե բանտ կնստեցնի:

— Տո՛ւր իմ փողերը,— ասել էր Գավրիլը,— տո՛ւր իմ քրտինքի վարձը:

Այս որ լսել էին, մյուս բանվորներն էլ էին իրենց վարձը լրիվ պահանջել: Վերակացուն էլ ոստիկաններ էր կանչել ու Գավրիլին բռնել էր տվել: «Թող խրատ լինի մյուսներին»,— ասել էր նա:

— Բաց կթողնե՞ն,— ասում էր Պետյայենց հարևան Մակար





պապը,— մի քիչ կդնքսեն ու բաց կթողնեն:

— Իսկ ինչո՞ւ պիտի դնքսեն, ախր,— մեջ մտավ Սավկա անունով մի ջահել բանվոր,— մարդն իր փողերն է ուզել, ի՞նչ է արել:

— Է՜, ջահել,— ասաց Իգնատ քեռին,— որ կապիտալիստները մեր բոլորի հասանելիքը տան, էլ կապիտալիստ չեն, չէ՞: Տեսնո՞ւմ ես ինչ տներում են ապրում մեզ, իսկ երեխեքը... Պետյա՛, քանի՞ տարեկան ես,— հանկարծ հարցրեց նա:

— Տասներկու,— հպարտ, որ ինքն էլ են մասնակից դարձնում զրույցին,— պատասխանեց Պետյան:

— Իսկ դպրոց գնո՞ւմ ես:

Պետյան լուռ էր: Նա չէր հասկանում, թե քեռի Իգնատն ի՞նչ է ուզում ասել: Ախր ավանում ո՞վ է դպրոց գնում. բա՞ն ասաց Իգնատ քեռին:

— Այ, տեսնո՞ւմ ես, Սա՛վկա,— շարունակեց Իգնատը,— տղան տասներկու տարեկան է, իսկ դպրոցը չգիտի ինչ բան է: Իսկ գիտե՞ս ինչու... Նրա համար, որ մութ մնա և մի տարի հետո գնա գործարան, հոր նման տասներկու ժամ մեջքը ծռի ու մտածի, թե հենց էդպես էլ հարկավոր է: Հենց վերցնենք քեզ, Սավկա, դու քսան տարեկան չկաս, բայց արդեն յոթ տարի է աշխատում ես: Իսկ ստացածդ ի՞նչ է...

— Բա ո՞նց կլի մեր բանը,— հարցրեց Մակար պապը:

— Ոնց կլի՞... էսպես չի՛ մնա:

Ու այդ գիշեր Պետյան իմացավ, որ կյանքը «էսպես չի մնա», կփոխվի, որ բարի, լավ մարդիկ կան ու նրանք ժողովրդի մասին մտածում են:

## ՆՐԱ՛ՆՔ ԿՈՄՈՒՆԻՍՏՆԵՐ ԵՆ

Պետյայի հայրիկին իրոք շուտով բաց թողեցին: Նրան ծեծել էին ու ազատ արձակել, բայց սպառնացել էին, որ եթե նորից բողոքի, գործարանից կհեռացնեն: Տուն գալով, մի երեք օր նա գործի չէր գնում, ոչ ոքի հետ չէր խոսում, իսկ երբ շաբաթ երեկո հավաքվեցին նրա ընկերները՝ քեռի Իգնատն ու Սավկան, Մակար պապն ու մյուսները, նա բարձրացրեց իր ուժեղ բռունցքներն ու սեղանին խփելով մռնչաց.

— Բա էսքան ուժեղ ձեռքեր ունեցող մարդուն էլ ծեծե՞ն, ա՛յ ժողովուրդ, ախր էս ի՞նչ արդարություն է:

— Արդարություն չկա՛,— ասաց Մակար պապը:

— Կլինի՛, էսպես չի՛ մնա,— քեռի Իգնատն այնքան ուժեղ ասաց այս խոսքերը, որ քիչ մնաց ճրագը մարեր:

Ու նորից սկսվեց երկար զրույցը խելոք աշխատավոր մարդու մասին, նրա բախտի ու ճակատագրի մասին: Պետյան այդ օրը նորից շատ բան իմացավ. նա իմացավ, որ ժողովրդի մասին մտածող այն «բարի ու լավ մարդիկ» կոմունիստներ են կոչվում, իմացավ, որ նրանք մի ջահել ղեկավար ունեն Ուլյանով անունով, և որ շուտով Ռուսաստանում ազատություն կլինի:

Անցան տարիներ: Պետյան սկսեց հոր հետ գործարան գնալ: Աշխատում էին երկուսով, բայց միևնույնն է, դարձյալ վատ էին ապրում, նորից պարտքի տակ էին ու օրվա հացի կարոտ:

Մի օր էլ Պետյան աշխատանքից հետո հորն ասաց.

— Հայրիկ, դու մենակ գնա տուն, ես չեմ գա:

— Ո՞ւր ես գնում, որդի,— հարցրեց հայրը:

— Քեռի Իգնատի մոտ եմ գնում, մի քիչ պիտի խոսենք:

Գավրիլը ոչինչ չասաց: Դե Պետյան արդեն հասունացել էր, ինքնուրույն տղա դարձել: Չէր խմում, չէր հարբում, ուրեմն վատ բան չէր անի:

Եվ Պետյան սկսեց հաճախակի տուն չգալ: Նա երբեմն լուսադեմին էր միայն գալիս և առանց հանգստանալու գնում գործարան: Մի գիշեր էլ, երբ նա տուն եկավ, տեսավ, որ հայրը չի քնել ու գունատ նստած իրեն է սպասում:

— Հայրիկ, ինչո՞ւ չես քնել,— հարցրեց նա:

— Տղա՛ս, սիրտս կախված է ընկել, հասկացրու ինձ: Էդ ի՞նչ բանի ես, ո՞ւր ես կորչում գիշերները: Ասում եմ, չլինի՞ վատ մարդկանց հետ կապվես, գլուխդ փորձանքի տաս...

Պետյան սկզբում լուռ էր, բայց տեսնելով, որ հայրը շատ է անհանգստանում, ասաց.

— Հայրիկ, հիշո՞ւմ ես, որ քեզ ոստիկանները բռնեցին: Ես այն ժամանակ դեռ փոքր էի, բայց այն օրը երբեք չեմ մոռանա: Դու ուժեղ, ազնիվ աշխատող ես, բայց քեզ բռնեցին:

Ինչո՞ւ: Դու չգիտես, հայրիկ, իսկ ես արդեն գիտեմ ինչու...

Հետո նա ձայնը ցածրացնելով ասաց.

— Կան բարի, լավ մարդիկ, հայրիկ, նրանք կոմունիստներ են կոչվում: Ես այդ մարդկանց հետ եմ, հայրիկ, ու մենք չենք թողնի, որ արդարությունը մեռնի:

## ԵՎ ԱՐԴԱՐՈՒԹՅՈՒՆԸ ՀԱՂԹԱՆԱԿԵՑ

Ծանր էր ժողովրդի վիճակը ցարական Ռուսաստանում, ու մարդիկ կամաց-կամաց հասկացան, որ այսպես ապրել այլևս չի կարելի: Եվ ովքեր այդ հասկացան, համախմբվեցին Վլադիմիր Իլյիչ Լենինի շուրջը, որն այն ժամանակ ստեղծում էր մեր պարտիան:

Լենինն ասում էր, որ պետք է տապալել ցարին, ստեղծել այնպիսի մի պետություն, ուր մարդը մարդուն այլևս չշահագործի, ուր ոչ մի մարդ մյուսի հաշվին չապրի, ուր չլինեն հարուստ ու աղքատ, տեր ու իշխան, որ այդ պետությունը ղեկավարեն իրենք՝ աշխատավորները:

Բայց այն ժամանակ աշխարհում այդպիսի պետություն չկար: Ամեն տեղ կապիտալիստներն ու թագավորներն էին և նրանք հեշտությամբ չէին հրաժարվի իրենց հարստություններից: Ռուսաստանում էլ կապիտալիստներն ու կալվածատերերը, մանավանդ ցարը, չէին ուզում զրկվել իրենց հարստությունից և չէին ուզում, որ ժողովուրդը դառնա երկրի տերը, իր վաստակած բարիքների տերը, դրա համար էլ սկսեցին ազատության համար պայքարող ռևոլյուցիոներներին ձերբակալել, ուղարկել Սիբիր: Հարուստները արյունոտ կռիվներ էին սարքում, տարբեր ազգերի հանում իրար դեմ, որպեսզի նրանք չմտածեն ռևոլյուցիայի մասին: Բայց դանակը ոսկորին էր հասել, ու ժողովուրդը գնաց պարտիայի հետևից, հավատաց նրան և իր բախտը վստահեց նրան:

1917 թվականին Լենինի գլխավորությամբ բոլշևիկները ռևոլյուցիա կատարեցին: Մեր երկրից բուրժույներն ու կալվածատերերը փախան, ու ստեղծվեց բանվորագյուղացիական պետություն: Դա աշխարհում առաջին ժողովրդական պետությունն էր, որտեղ չկային հարստահարիչներ ու կեղեքիչներ, որտեղ աշխատավորները իրենք էին դարձել երկրի տերը:

Մյուս կապիտալիստական երկրների հարուստները վախեցան: Նրանք մտածեցին, որ եթե մեր սովետական պետությունը մնա, իրենց երկրի աշխատավորներն էլ նույնը կանեն: Ու որոշեցին ինչ գնով էլ լինի տապալել սովետական պետությունը: Նրանք եկան մեզ վրա, եկան արևմուտքից ու հյուսիսից, հարավից ու արևելքից և դեռ ներսից էլ նրանց կողմնակից հարուստները եկան:

Լենինը կոչ արեց ժողովրդին կռվել մինչև արյան վերջին կաթիլը և պաշտպանել նվաճած ազատությունը: Պարտիան ժողովրդին ոտքի հանեց թշնամիների դեմ, և տասնչորս պետություն չկարողացավ մեզ վրա: Նրանք ջարդված ու ամոթահար փախան:

Հետո մեր պարտիան սոցիալիզմի կառուցման ծրագիր ընդունեց ու ժողովուրդն սկսեց սոցիալիզմ կառուցել: Կարճ ժամանակում մեր երկիրը այնքան փոխվեց, որ դարձավ անճանաչելի: Երեխաներն սկսեցին դպրոց գնալ, սկսեցին սովորել նաև մեծահասակները. չէ՞ որ նրանց երեխա եղած ժամանակ դպրոցներ չկային:

Կառուցվեցին նոր դպրոցներ, ակումբներ, գործարաններ ու էլեկտրակայաններ, գյուղերը, քաղաքները փոխվեցին, գեղեցկացան, կյանքը դարձավ ուրախ ու երջանիկ: Մեր երկրի արդյունաբերությունն այնպես զարգացավ, որ կարճ ժամանակում շատ կապիտալիստական երկրներից անցանք: Կապիտալիստները նայում էին մեր երկրին ու նախանձում: Եվ ինչպե՞ս չնախանձեին: Այն, ինչ նրանք ձեռք էին բերել հարյուրավոր տարիների ընթացքում, մեր երկիրը մի քանի տարում էր նվաճում: Նրանք տեսան, որ իրենցից առաջ ենք անցնում, որոշեցին նորից խանգարել մեզ: Դարձյալ պատերազմ սկսեցին մեր դեմ, բայց սովետական ժողովուրդը ջախջախեց ֆաշիստներին ու նորից շարունակեց իր խաղաղ շինարարությունը:

Պատերազմից հետո մենք այլևս միակ սոցիալիստական պե-





ություն չէինք։ Մեր օրինակով դեմոկրատական պետություններ ստեղծվեցին Չինաստանում, Չեխոսլովակիայում, Լեհաստանում և ուրիշ շատ երկրներում։

Մեր երկիրն սկսեց հսկայական քայլերով առաջ գնալ։ Հիմա արդեն՝

**ամենից արագ թռչում են**
**մեր ինքնաթիռները.**
**ամենից բարձր ու հեռու**
**թռչում են մեր հրթիռները.**
**առաջինը մեր արբանյակը**
**պտտվեց Երկրի շուրջը.**
**առաջինը մեր հրթիռը հասավ Լուսին,**
**առաջինը մեր արբանյականավը թռավ դեպի Վեներա,**
**առաջինը մեր քաղաքացին**
**պտտվեց Երկրի շուրջը և**
**նվաճեց տիեզերքը։**

## ՄԵՆՔ ԿԱՊՐԵՆՔ ԿՈՄՈՒՆԻԶՄԻ ՕՐՈՔ

Այն օրերին, երբ մեր երկրի վրա տասնչորս կապիտալիստական պետություն էր հարձակվել, երբ սով ու աղքատություն էր տիրում երկրով մեկ, Լենինը սոցիալիզմի ծրագիր էր կազմում։ Կապիտալիստներն այն ժամանակ ծիծաղում էին. «Իրենց գլուխը չեն կարողանում պահել, սոցիալիզմից են խոսում» — ասում էին նրանք։ Մի նշանավոր գրող Լենինին նույնիսկ «Կրեմլի երազող» անվանեց։ Անցան տարիներ, սխրանքներով ու հերոսական աշխատանքով լի տարիներ, որոնք ցույց տվեցին, որ Լենինն իրավացի էր։ Հարազատ պարտիայի ղեկավարությամբ մենք սոցիալիզմ կառուցեցինք մեր երկրում։

Հիմա մեր պարտիան կոմունիզմի կառուցման ծրագիր է ընդունել։ Քսան տարում մենք կկառուցենք մարդկության երազած ապագան՝ կոմունիզմը ու մենք ինքներս կապրենք կոմունիզմի օրոք։

Կոմունիզմ... այդ նշանակում է առաջ անցնել բոլոր կապիտալիստական երկրներից, այդ նշանակում է, որ սովետական մարդիկ կապրեն ավելի լավ, քան աշխարհի որևէ երկրում։ Այդ նշանակում է, որ սովետական մարդիկ կաշխատեն օրական վեց ժամ, կհանգստանան շաբաթը երկու անգամ. կբուժվեն ձրի, կսնվեն ձրի, կսովորեն ձրի, կաշխատեն իրենց ուժերի չափ, կստանան այնքան, ինչքան որ կարիք ունեն։

## ՔՍԱՆ ՏԱՐԻ ԱՆՑ

Գնացքն արդեն շարժվելու վրա էր, երբ երկու երիտասարդների ուղեկցությամբ ներս մտավ մի ծեր գեներալ։ Երիտասարդները նրա թևերից բռնած բարձրացրին վագոն և ուղեկցեցին մինչև մեր խցիկը։

— Դե շուտ իջեք, — դառնալով նրանց ասաց գեներալը, — հիմա գնացքը կշարժվի։

Երիտասարդները համբուրվեցին գեներալի հետ ու, արդեն շարժվող վագոնից, ցած թռան։

— Ես միշտ այսպես եմ, — դառնալով մեզ ասաց նա, — վերջին րոպեին եմ կայարան գալիս։ Սպասել չեմ սիրում բոլորովին։

Հետո իր փոքրիկ ճամպրուկը տեղավորելով, ասաց.

— Այսպես ուրեմն, գնում ենք Երևան։

— Օ՜, որ իմանաք ինչքա՜ն եմ շտապում, — ասաց Անահիտը, քսանամյա մի աղջիկ, որ նոր էր ավարտել ջոկատավարների միութենական դասընթացները և հիմա վերադառնում էր Երևան։

— Ամենից անհամբերը Անահիտն է, — ասաց Գեղամը, մի երիտասարդ ինժեներ, որ Երևան էր վերադառնում գործուղումից. — կես ժամ է վագոնում ենք, անընդհատ շտապում է։

— Է՜, չեղա՜վ, շտապել չի կարելի, — ասաց գեներալը։ — Ճիշտ որ շտապես, հետ չես գնա։

Հետո փոքրիկ ճամպրուկը տեղավորելով, ավելացրեց.

— Եկեք ծանոթանանք, թե չէ ինչի՞ նման է, խոսում ենք իրար հետ ու կարգին չենք ճանաչում իրար, — ու ձեռքը մեկնելով ասաց, — Պյոտր Գավրիլիչ։

Պյոտր Գավրիլիչը շատ զրուցասեր մարդ դուրս եկավ։ Պարզվեց, որ նա գնում է իր տղայի մոտ, որը Երևանի Մետրոշինի գլխավոր ինժեներն է։ Գեղամը, որ այս իմացավ, վեր թռավ տեղից։

— Ուրեմն դուք Պավել Պետրովիչի հա՞յրն եք։ Ինչպիսի՜ զուգադիպություն, ես նրա մոտ եմ աշխատում։ — Հետո նա մի

տեսակ շփոթված դառնալով մեզ, ասաց.

— Դուք ծանոթացաք, բայց ոչ լրիվ։ Պյոտր Գավրիլիչը հին ռևոլյուցիոներ Բեկետովն է, լսած կլինեք։

Հարցն ավելորդ էր։ Ո՞վ չէր լսել Պյոտր Բեկետովի մասին, որի անունը կապված էր նաև Հայաստանի ազատագրության հետ։

Մենք շատ ուրախացանք, և ամենից շատ՝ Անահիտը։ Նա իսկույն պայմանավորվեց ծեր գեներալի հետ իր պիոներների հետ հանդիպում ունենալու մասին։

Երեխանե՛ր, դուք երևի նույնպես հիշեցիք գեներալին։ Չէ՞ որ դա հենց այն Պետյան է, որի հորը՝ Գավրիլ Բեկետովին, աշխատավարձը լրիվ պահանջելու համար ստրկատերերը բանտ նետեցին։

Դուք հետո տեսաք, որ Պետյան ճիշտ ուղի գտավ կյանքում, կապվեց ռևոլյուցիոներների հետ և պայքարեց սովետական իշխանության համար։ Հետո նա մասնակցեց նաև Հայաստանի ազատագրմանը, դրա համար էլ նրան Հայաստանում շատերը գիտեին։

Հիմա Պավել Գավրիլիչն արդեն պաշտոնաթող գեներալ էր, մոտ իննսուն տարեկան և գնում էր Հայաստան՝ որդու մոտ հանգստանալու։

* * *

Ճեպընթացը Լենինգրադից դուրս եկավ վաղ առավոտյան։ Բոլորը արդեն ոտքի վրա էին, իսկ գեներալը նույնիսկ հասցրել էր Լենինականում ցած իջնել։

— Երկու ժամից Երևանում կլինենք,— ասաց նա ներս մտնելով։

— Երկու ժամի՞ց,— զարմացավ Անահիտը։— Իսկ ես կարծում էի ավելի շուտ կհասնենք։

— Վերջին անգամ ես այստեղ եղել եմ քառասուն տարի առաջ, սիրելի Անահիտ, և այն ժամանակ Լենինականից — Երևան հասանք վեց ժամում,— ասաց գեներալը։

— Վեց ժամո՞ւմ...

— Այո։ Իսկ Մոսկվա էինք հասնում երեք օրում։ Դա ի՞նչ է, առաջին անգամ ես Երևանից Մոսկվա հասել եմ տաս օրում, բայց այդ շատ վաղուց էր, 1921 թվականին։

Պյոտր Գավրիլիչը խոսում էր, բայց աչքը չէր կտրում պատուհանից։

Քիչ հետո նա ընդհանրապես մոտեցավ պատուհանին և այդպես լուռ կանգնեց այնտեղ։ Թվում էր, թե նա ինչ-որ բան է փնտրում, բայց կնճռապատ դեմքի վրա հիացմունքի մի այնպիսի փայլ կար, որ մենք չէինք ուզում ընդհատել նրա մտքերը։ Հետո նա դարձավ դեպի մեզ ու հարցրեց։

— Իսկ որտե՞ղ են քարերը։

— Ի՞նչ քարեր,— հարցրեց Անահիտը։

— Ինչ քարե՜ր... Ուրեմն դուք քարերի մասին է՞լ գաղափար չունեք։

Ես, իհարկե, գիտեի, թե ինչ քարերի մասին է խոսում Պյոտր Գավրիլիչը։ Մի ժամանակ Աղինից մինչև Հոկտեմբերյան ընկած էին գորշ, քարքարոտ բլուրներ, իսկ հիմա այստեղ ծփում էին անտառներն ու այգիները։ Գեներալը վերջին անգամ Հայաստանում եղել էր 1961 թվականին, և զարմանալի չէր նրա հարցը։ Քսան տարում ամեն ինչ փոխվել էր։ Ժայռոտ, քարքարոտ տարածությունները այգիներ էին դարձել, այգեստան էին դարձել նաև Հոկտեմբերյանից մինչև Մասիս ընկած աղուտները։ Իսկ Հոկտեմբերյանն անճանաչելի էր դարձել։ Երկնասլաց շենքերը, գործարանների բազմաթիվ ծխնելույզները մեծ քաղաքի տպավորություն էին թողնում։ Ասենք, Հոկտեմբերյանն արդեն մեծ քաղաք էր, մոտ հարյուր հազար բնակչությամբ։

Գեներալը, մեր զրուցասեր գեներալը, լռակյաց էր դարձել։ Նա ագահորեն նայում էր պատուհանից դուրս, նայում էր Արագածի անտառապատ լանջերին, այգիներին, գործարանների ծխնելույզներին և կարծես նրանցով վարձատրված էր զգում իրեն այն բոլոր տառապանքների համար, որ նա կրել էր ցարական բանտերում ու աքսորներում։

Արդեն մոտենում էինք Երևանին, երբ Պյոտր Գավրիլիչը դիմելով Անահիտին, ասաց.

— Այո՛, ես կգամ պիոներների հետ հանդիպելու, ես նրանց շա՜տ բան ունեմ պատմելու։


Նկ. ՍԱՐԳԻՍ ՄՈՒՐԱԴՅԱՆԻ



# Ազատության դրոշակը

/ԲԱԼԼԱԴ/

ՍՈՂՈՄՈՆ ՄԿՐՏՉՅԱՆ

Ղուկաս Ղուկասյանի
անմահ հիշատակին

Նկ. ՎԱՉԵ ԹԵՎԱՆՅԱՆԻ

1.

Քայլում է Ղուկասն անխոնջ, անննկուն,
Ընկերների հետ իր քաջակորով.
Քայլում են նրանք ողջ գիշերն անքուն՝
Նեղ կածաններով, խոր-խոր ձորերով:
Ժայռերի նման մռայլ ու խոժոռ
Զայրույթն է նրանց սրտում լեռնացած.
Քայլում են նրանք հավատով հզոր
Եվ անմարելի հույսերով լցված:
Պաշարեց նրանց թշնամին երեկ,
Հազիվ ճեղքեցին կրակի շղթան.
Բայց չե՞ն վհատվի... հենց վաղը ևեթ.
Հեղեղի նման նոր ուժով կգան...
Նվաճված բերդը թողեցին նրանք,
Ամրոցը Կարսի՝ ձեռքից դուրս եկավ.
Մուսայելյանից չստացան նամակ,
Ջրահագնացքը ուշացա՞վ, չեկավ...
Ջրահագնացքը... ահա՛ և կնճռոտ
Հարցերի հարցը, հանգույցը գորդյան.
Ոչ բարի մի լուր ստացվեց, ոչ՝ բոթ.
Մի՞թե մատնվեց ճամփին կորստյան...
Ոտխին մնաց ամրոցը Կարսի,
Արյո՞ւն է ծորում սրտից Ղուկասի...
Իսկ ընկերները խոսքեր չեն գտնում,
Լուռ ու գլխահակ քայլում են մթնում...

Ճեղքեց խավարի օվկիանն անսահման
Մայիսյան բոսոր գունդն արեգակի,
Ողողեց շուրջը լույսով ոսկեման
Ու քարոտ ճամփան հերոս խմբակի:
Եվ Ղուկասն ասաց. «Այս արևի պես
Կցրենք շուտով մութը դարավոր
Եվ ժողովրդին խարխափող ու խեղճ,
Կպարգևենք լույս ու կյանք բախտավոր...»
«Ա՛յ, խոսիր-այդպես, սիրտ տուր մեզ, Ղուկա՛ս,
Ցրի՛ր մռայլդ, դա քեզ չի սազում.
Դարդ չունենք կյանքում՝ քանի որ դու կաս,
Աշխարհից ուրիշ ոչինչ չենք ուզում.
Միայն քո կողքին լինենք առհավետ,
Սրտակից լինենք իրար աշխարհում.
Վիշտ ու խնդություն կիսենք իրար հետ,
Զինակից լինենք այս մեծ պայքարում...»
«Քանի որ ձեզ պես ընկերներ ունեմ՝
Հեղափոխության հրով մկրտված,
Իմ քաջ եղբայրնե՛ր, ես հավատում եմ,
Որ կտեսնենք մեր երկիրն ազատված:
Ա՜խ, իմ տառապյալ, թշվառ Հայաստան,
Ուրիշ իղձ չունենք աշխարհում արար.
Թող մեր արևը մարի հավիտյան,
Միայն ծագի քեզ արև կենարար...»
Նստեց խումբը, որ մի քիչ շունչ քաշի
Ջով առվի ափին, ջրաղացի մոտ.
Թռչուններն իրենց երգով անուշիկ
Շոյեցին նրանց սիրտը կրակոտ:
Ու տղաները պաղ ջրով առվի
Մարեցին տանջող հուրը ծարավի:
Այդ պահին նրանց մոտեցավ հանկարծ
Մի ձյունամորուք զառամյալ ծերուկ.
Ասես նա լիներ բարության աստված՝
Հրաշքով իջած այդ ձորը խորունկ:
Ղուկասը հենց որ ճանաչեց նրան,
Սիրտը թունդ առավ, էլ չհամբերեց.
Վեր թռավ ինչպես մանուկ թռվռան,
Գիրկն ընկավ ծերի, ձեռքերն համբուրեց:
Ծերունին շշմած նրան էր նայում,
Ծալքերն ուղեղի փորփրում դանդաղ.
Մի՞թե հարազատ ունի աշխարհում,
Ո՞վ է արդյոք այդ զինվորը ուրախ:
— Չե՞ս ճանաչում ինձ, ա՛յ քեռի Արման,
Քո Ղուկասն եմ, է՛, լանն Օհանեսի...
Հիմա էլ ծերը գիրկն առավ նրան,
Համբույրներ տեղաց դեմքին Ղուկասի:
— Ա՛յ առյուծի ձագ, էդ ե՞րբ մեծացար
Ու հայրենիքիդ քաջ զինվոր դարձար...
Դե, իմ կտրիճներ, հոգնած եք, սոված,
Ես հոգապահուստ քիչ ալյուր ունեմ.
Մի քիչ համբերեք. հենց հիմա ձեռաց
Թոնիր կվառեմ, ձեզ պատիվ կանեմ...
Մարմանդ ծուխն իսկույն երկինք ոլորվեց.
Թարմ հացի բույրը տարածվեց շուտով.
Ապա կուսական կանաչին դիզվեց
Տաք-տաք բաղարջը, համով ու հոտով:
Կերան տղերքը: Համո՜վ էր այնքան,
Հիշեցին բոքոնն իրենց մոր թխած:
Եվ Ղուկասն ասաց.— Գոհ՛ ենք անսահման,
Ճիշտն ասած՝ քեռի, շատ էինք սոված:
— Իմ կանաչ-կտրիճ զավակներ ազիզ,
Թող բարով հասնեք դուք ձեր մուրազին:
Թող բացվեն ձեր դեմ շղթա ու կապանք,
Փշերը դառնան վարդ ու լալազար...
Ա՜խ, տեր իմ աստված, ի՞նչ օրի ընկանք,

Ինչո՞ւ ես դու մեզ տանջում չարաչար։
Էսքան էլ դավե՞ր. էսքան էլ ցավե՞ր.
Ծովի պես արյուն-արցունք թափեցինք.
Դաշտերը խոպա՞ն, մարդիկ բնավե՞ր,
Հերիք չի՞ ինչքան մենք տառապեցինք։
Մի բուռ ժողովուրդ՝ հազար հարամի.
Դրսից խփում են, ներսից՝ թալանում.
Ախր, խեղճ հայը ի՞նչ հանցանք ունի,
Որ էսքան պատիժ, զրկանք է տանում։
Աստված, ջուր լցրո՛ւ դու էս կրակին.
Թե մեղավոր ենք, գթա՛, ների՛ր մեզ.
Խղճա էս ջահել-ջիվան բալեքին.
Քո ոտքի հողն եմ, աղաչում եմ քեզ...
— Ջուր մի՛ աղոթիր.— Ղուկասը պոռթկաց.—
Չկա՛ աշխարհում հավատ ու օրենք.
Վառոդն է միակ զորավոր աստված.
Եվ զենքով պիտի մեր բախտը կռենք։
Շատ ենք աղոթել դարեր շարունակ
Եվ հզորներին գլուխ խոնարհել.
Բայց տվել են ծեծ նրանք ոտնատակ
Ու վերուստ ոչ մի պատիժ չեն կրել։
Էլ հին գայլերին չենք աղերսի մենք.
Այլ կտանք հարված նրանց պիղծ դնչին.
— Ափսո՜ս, ջաղացում էլ ալյուր չունեմ,
Որ ճամփաբաժին տամ իմ քաջերին...—
Բայց խոսքը բերնում մնաց ծերունի.
Մոտերքում պայթեց ինչ-որ հրացան.
Կարմրեց խկույն ճերմակը քունքի,
Ու տղաները շուտ իրար անցան...

2

— Պատրա՛ստ, որոտաց Ղուկասն համարձակ.—
Թշնամին կրկին պաշարել է մեզ...
Քաջությունը մեր փրկիչն է միակ,
Կռվե՛նք, ընկերներ, նորից քաջի պես։
Նայեցե՛ք, ահա մեքենաներով
Ջինամթերք ու զինվոր են բերում.
Երևում է, որ այդ սև-դև Մուրոն
Մի նոր դիվային թակարդ է լարում...
Տեր-Հաջոյի նենգ ոհմակից պրծանք.
Այս էլ նո՛ր հրեշ, այս էլ նո՛ր փորձանք...
Չի հասնի մեր ձայնն, ինչքան էլ գոչենք.
Հեռու ենք ընկած մեր ընկերներից.
Սարերի մեջ ո՞ւմ օգնության կանչենք.
Մեր օգնականը այդ մենք ենք նորից։



Կքշենք նրանց ոհմակները նենգ,
Եվ դա կլինի կռիվը վերջին...
Դե ելեք, տղե՛րք, ընկենք ճամփա,
Թանկ է մեզ համար ժամանակն հիմա.
Մեկ օրը դա մի տարի է երկար
Ցավի տակ կքված ամբոխի վրա։—
Ու ելան նրանք քիչ թեթևացած,
Որ շարունակեն ճամփան դժվարին.
Ծերունին հոր պես համբուրեց նրանց
Ու օրհնեց նորից՝ արցունքն աչքերին.
Մահը վաղուց ենք մենք արհամարհել.
Փառք է մեզ համար այս կռվում մեռնել.
Եվ չի՛ կորչի մեր արյունը բոսոր,
Կհրդեհի այն սրտեր բյուրավոր։
Աշխատե՛ք դիպուկ զարկել գնդակը.
Գրոհենք համառ, ճեղքենք օղակը...—
Եվ համբուրվեցին հերոսներն անծայն,
Ու զենքերն առած՝ գրոհի անցան։
Բախվեցին իրար զորքն ու քաջերը,
Կռիվն ահեղ էր և անհավասար.



Հորդում էր վարար արյան հեղեղը,
Առուներ կազմում, ներկում դաշտ ու սար։
Արևի աչքից արյուն էր կաթում,
Լալիս էր ասես զայրույթով լցված,
Բյուրակնի գլխին ամպն էր որոտում.
Ջենով Օհանը ասես սարն ելած՝
Գոռում էր հուժկու հայոց երկրով մեկ
Եվ գուժում բոթը այդ սրտակեղեք։
Գոռում էր Ջենով Օհանը, գոռում,
Որ Արգինեի հնամյա ձորում.
Կատաղի չարք ու դևերը մթին
Խեղդել են ուզում դյուցազուն Դավթին...
Թնդում էր բոթը լեռնաշխարհով մեկ,
Խուլ արձագանքով ցնցում սար ու ձոր.
Հեռվում Թոնդրակա լեռը հուսաբեկ
Քիչ մնաց լավա ժայթքեր ահավոր.
Հիշեց նա Սմբատ Զարեհավանցուն,
Որ ըմբոստության ոգի էր նույնպես,
Բայց խավարակուռ, անդուռ ամրոցում
Ողջակեզ եղավ մի ասուպի պես։
Հիշեց, հառաչեց Թոնդրակա հսկան,
Ու սրտի խորքից ծուխ ու բոց ելան...
Ընկնում էին սեգ քաջերը մեկ-մեկ
Ու ճյուղակոտոր կաղնու պես փռվում,
Բայց չէին զիջում դիրքերը երբեք,
Ինչպես վիրավոր առյուծը կռվում։
Նենգ խմբապետն էր խիստ ահաբեկվել,
Շատերը փախան ինչպես նապաստակ.
Բայց սեգ Ղուկասի արևն էր թեքվել,
Ընկերներն ընկան ու... չկա գնդակ...
Ընկերներն ընկան Ղուկասի առջև,
Հնձած կակաչներն ինչպես լանջերին.
Սրտներում հազար մուրազ ու արև,
Քնեցին արնոտ, քարե բարձերին...
Ղուկասը սիրով խորունկ ու անհագ
Մեռնող ընկերոջ երեսին թեքվեց,
Բայց... ընկերոջ ջերմ համբույրի տեղակ
Մի թեժ գնդակ իր ճակատին հպվեց...
Վարդերով զուգվեց ճակատն հերոսի,
Փշո՜տ վարդերով, վարդերով արնո՜տ.
Շողշողաց փայլով սիրած դրոշի՝
Հաղթության սովոր կուրծքը փոթորկոտ...

Խոժոռվեց, ամպեց լեռը Ալաջա,
Կայծակը այնտեղ սրեր էր շաչում...
Ղուկասին թվաց, որ գլխին նրա
Նոր բանակներ՝ են ահեղ մարտնչում.
Ոտքի է ելել ժողովուրդն անահ,
Ամենուր կովի երգեր են հնչում.
Ալ դրոշներն են փողփողում ահա,
Ջրահապատը առաջ է թռչում,
Եվ հպարտ կանգնած գնացքի վրա՝
Մուսայելյանը իրեն է կանչում...
Եվ ականջում խուլ մարտերի շառաչ,
Ու աչքերի մեջ՝ ապագան որոշ,
Նա փոթորկաշունչ նետվում է առաջ,
Ասես հաղթության արնավառ դրոշ...
Արևմուտքում թեժ հրդեհ էր վառվել,
Արևի ճակտից արյուն էր ծորում,
Ամպերն էին ողջ արյունով ներկվել,
Ինչպես դաշտերը Արգինե ձորում.
Արևմուտքում թեժ հրդեհ էր վառվել,
Հրդեհի փայլն էր աշխարհին փռվել...
Դա սեգ Ղուկասի հայացքն էր վերջին՝
Երազո՜ւն, վսե՛մ ու արևաբո՜րբ,
Ուր ո՛չ թե անհույս մեռնում էր արփին,
Այլ մայր էր մտնում՝ մինչև լուսաբաց...

# ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆ ՓԱՐՈՍԻ, ՈՏԱՆԱՎՈՐՆԵՐԻ և ԵՐԵՔ ՀՈՐԹՈՒԿԻ ՄԱՍԻՆ

ՀՈՎՀ. ՂՈՒԿԱՍՅԱՆ

Նկ. ԱՐՏՈ ՉԱԳՄԱՔՋՅԱՆԻ

*„Հարգելի խմբագրություն.*

*Դուք երևի ինձ հիշեք. ես նույն Դաղումյան Հովիկն եմ, որ երկու տարի առաջ ձեզ մի ոտանավոր էի ուղարկել, որտեղ ասում էի՝*

Ես Հովիկն եմ, գրել գիտեմ, գիր գիտեմ,
Իմ դասերը անգիր գիտեմ, լավ գիտեմ։

*Դուք այդ ոտանավորը չտպեցիք. գրել էիք, որ դա մի հին այբբենարանից է, և ճիշտ որ այդպես էր։ Դա ես լսել էի տատիցս, և որովհետև մեր հայերենի ուսուցիչն ասել էր, որ Պուշկինն էլ էր գրում իր տատից լսած հեքիաթները, ես էլ այդպես արի։ Բա էդ ո՞նց կլինի. Պուշկինին կարելի է, ինձ ո՞չ։*

*Հետո. հետո ես նկարեցի այն ֆերման, որտեղ մայրիկս կթվորուհի է, այն էլ չտպեցիք։ Գրել էիք, որ դա էլ ոչ թե կաթնատնտեսային ֆերմա է, այլ մի ծառ, որի ճյուղին սարյակի բույն կա։ Բա եղա՞վ, դա էլ հո տատիկիցս չեմ լսել, աչքովս տեսած բան է։ Ա՛յ, ես նորից կնկարեմ ու տակն էլ կգրեմ, թե որը ինչ է։*

*Ահա.*

*Մեր գյուղից որ դուրս ենք գալիս, հենց կալերի տակ մի ծառ կա. հետո հինգ բլուր ենք անցնում, ու վեցերորդի՝ Ծաղկասարի լանջին էլ ֆերման է։ Խնդրում եմ, լավ նայեք. թող Ձեր նկարիչն էլ լավ նայի։ Էստեղ ծառն ու սարյակիբույնն ի՞նչ գործ ունեն։ Տեսնու՞մ եք, որ ճիշտ եմ նկարել։ Իսկ ինձ խռովկան են համարում։ Դպրոցում էլ էդպես է. Գալուստ անունով մեկը կա, որ իրեն բանաստեղծի տեղ է դրել (նրա „Աշունն" էլ տպել եք կազմի վրա) և օր չի լինում, որ շուրջս չթռչկոտի ու՝ . . .*

Բանաստեղծ է Հովիկը,
Զանք խեղճ է Հովիկը,
Խռովկան է Հովիկը,
Կռիվ կանի Հովիկը . . .

*Մի գլուխ՝ Հովիկը, Հովիկը . . .*

*Ինձ թվում է, որ ես Գալուստից լավ եմ գրում, և նկարներս էլ վատը չեն։ Հիմա, հարգելի խմբագրություն, թեև դուք էլ եք ինձ խռովկան համարում, բայց սա գանգատ չէ։ Ես միայն մի բան չեմ հասկանում, թե `ինչու՞, երբ այդպես ճիշտ նկարել եմ և ոտանավոր գրել, ոչ ոք ուշադրություն չի դարձրել վրաս, իսկ երբ մի բան, որ մտքովս էլ չի անցել, և կամ անելիս էլ շատ չնչին բան եմ համարել, հիմա ինձ բարձրացրել է բոլորի աչքում։*

*Բայց ես արժանի չեմ այդ գովեստներին, հարգելի խմբագրություն, այդ բոլորը ատամիս ցավից սկսվեց, ավելի՛ պիոներական, ատամիս ցավից։ Ես այնքան էլ քաջը չեմ, ինչպես կարծում են։ Մի տեսնեիք, թե ինչպես էի ծլուլ-ծլուլ գալիս այդ գիշեր . . .*

*Այս տարվա գարնանային արձակուրդներին կպա տատիս, թե՝ ֆերմա եմ գնում, կարոտել եմ մայրիկին։*

*Տատս թե.*

*— Ա՛յ տղա, ի՞նչ ֆերմայի ժամանակ է հիմա, — ասում է, — Ծաղկասարում անձրևից ու մառախուղից բացի, ուրիշ բան կա՞։ Բա մայրդ գլուխ քորելու ժամանակ ունի՞։*




*Նա ասաց, ես պնդեցի, նա ասաց, ես պնդեցի։ Ճարմերն ի՞նչ. նստեցրին ինձ ավտովարորդ Կարոյի կողքին և, ուղիղ ֆերմա։ Գրպաններս լիքը կաղին ու ընկույզ. ջարդում եմ ատամներիս տակ, մեկը Կարոյին տալիս, երկուսը ինքս ուտում։*



Կարոն էլ ո՞նց է երգում: Հետո, երբ հոգնեց, թե՝ մի բան էլ դ՛ու ասա: Չեմ ուզում ասել, բայց որ շատ ստիպեց, սկսեցի Ձեզ ուղարկած „Ես Հովիկն եմ" ոտանավորս, և տեսնեիք, թե Կարոյի բերանը ոնց էր բաց մնացել:

Իսկ դուք չտպեցիք...

Մի խոսքով, հասանք ֆերմա: Հրաշալի օր էր. ոչ տատիկիս ասած մառախուղը տեսանք, ոչ՝ անձրևը: Բայց մայրիկս իսկապես որ գլուխ քորելու ժամանակ չուներ: Ինձ որ տեսավ, գրկեց, համբուրեց, տարավ այն սենյակը, որտեղ ինքն ու իր երեք ընկերուհիներն են ապրում, մի քիչ հարց ու փորձ արեց տատիկից, հայրիկից և նորից գնաց իր գործին:

Դե, մայրիկս լավ կթվորուհի է: Դուք անպայման նրան կճանաչեիք: Էլ թերթ չմնաց, որ նրա մասին գրած չլինի: Բայց, հարգելի խմբագրություն, չեմ հասկանում, թե ինչու՞ են մայրիկիս „փարոս" ասում: Փարոսը ու՞ր, մայրիկս ու՞ր: Ես գիտեմ, փարոսը մի լուսավոր աշտարակ է, որ ծովերի ափին է լինում: Գիշերով լույս է տալիս, որ նավերը չմոլորվեն ու ափի ճամփան չկորցնեն: Թե որ իմ մայրիկն է, ես գիտեմ, որ նա իր օրում ծով չի տեսել, բայց որ նրա խնամած կովերը կրկնակի, եռակի կաթ են տալիս, ես ասեմ ծովի չափ կաթ, հավատացեք:

Եվ, ի՞նչ թաքցնեմ, այն բոլորը, ինչ որ գրում եմ, այդ փարոսի պատճառով է: Բանից դուրս է գալիս, որ ես էլ իմ փարոս-մայրիկիս օգնել, ես էլ, որպես թե փարոսի տղա եմ...

Ազնիվ պիոներական, մայրիկս Հովտաշենցի Աղավնի Դավթյանն է, իսկ ինձ էլ հո գիտեք: Այստեղ ոչ մի թաքուն բան չկա: Ես էլ մայրիկիս պես ոչ ծով եմ տեսել, ոչ նավ: Թե որ տեսած լինեմ, ինչու՞ չեմ գրի:

Վերջապես, մայրիկս գնաց իր գործին, ես էլ դուրս եկա սարը: Ի՞նչ սար, ի՞նչ կանաչ. տեղ-տեղ ձյունը քաշվել է, ու չեչաքարերը տարածվել են արևի տակ: Նստեցի ու կաղին է, որ ջարդում եմ ատամներով ու նայում շուրջս:

Ո՞նց չտպեցիք իմ ուղարկած նկարը: Բա էդպիսի գեղեցիկ տեսարանին էլ սարյակի բնով ծառ կասե՞ն:

Մի խոսքով, գիշերն եկավ. ի՞նչ գիշեր, մութ-ճոխիկ: Ընթրեցինք, մի մեծ աման էլ մածուն կերա, սարի գոլում սառած մածուն, ու պառկեցի: Գիշերը արթնացա մի սոսկալի ցավից. ականջս ո՞նց է ծակում. հետո գլխի ինչը, որ ասածս է: Վա՜յ, ի՞նչ ցավ էր. ես դեռ այդպիսի ցավ չէի տեսել: Նայում եմ շուրջս, սենյակում ոչ-ոք չկա, որ մի լավ լաց լինեմ: Վեր կացա, զույգ ափերով թուշս բռնած՝ դուրս եկա սենյակից, որ մորս գտնեմ: Խավար, ցուրտ, քամին ոռնոցով ականջս է ծակում: Տեսա գոմերում լույս կա. ծլուլ-ծլուլ գալով մի կերպ ինձ գցեցի այնտեղ ու, որ մորս չտեսա, մի՞ լաց դրի, մի՞ լաց, որ բոլորն էլ շուրջս հավաքվեցին: Մեկը հարցնում է, թե կարի՞ճ է կծել, մյուսը մորս թե՝ հո տղադ լուսնոտ չէ՞, իսկ ես որ մի անգամից չասացի, թե ատամս է ցավում, բոլորն էլ իրար անցան: Ի՞նչ անեին, գյուղից յոթ սար դենը, ֆերմայում ատամնաբույժ կլինի՞ այդ ժամին: Ես տնքում եմ, նրանք էլ են տնքում, ու ոչ մի դարման էլ չկա, որ ինձ գյուղի սանկայանը տանի: Միակ տղամարդը ֆերմայի պահակ Թադևոս բիձան էր, նա էլ չորս օր էր, որ հիվանդ էր եղել և գիշերով ոչինչ չէր տեսնում: Մեկն ասաց՝ տաքացրած աղ դրեք, արին՝ չօգնեց. մյուսը թե ասպիրին լավ է՝ ասպիրին չգտան. վերջը, Թադևոս բիձան, թե՝ չիբուխի ծուխը բերանումդ պահի, փորձված է: Չիբուխը վառեց, ծուխը ներս քաշեցի, ու աչքերիցս դուրս եկավ, էլի չօգնեց: Բանն այն է, որ ես, հարգելի խմբագրություն, ատամներիս կողմից շատ խեղճ եմ: Տատիկս նոր-նոր սկսել է ատամները քաշել, իսկ իմ բերանում ընդամենը տասնմեկ ատամ է մնացել: Մայրիկս ասում է կաթնատամ են, կընկնեն, նորերը դուրս կգան: Հա՛ ընկնում են ու ընկնում: Մեկը տանձի հետ եմ կուլ տվել, երկուսը տատիկս է թելով քաշել, իսկ մնացածն ի՞նչ է եղել, չգիտեմ: Բոլորն էլ ասում են, որ դա շատ քաղցրեղենից ու կաղինն ու ընկույզը ատամով ջարդելուց է: Ճիշտ է, բայց մարդ դա միայն ատամնացավի ժամանակ է հիշում: Մենք դեռ ոչինչ, ատամնաբույժ ունենք, ցավի ժամանակ մի կերպ օգնում է, բայց այդ խեղճ սկյուռնե՞րն ինչ են անում, ո՞նց են տանջվում ատամնացավի ժամանակ. չէ՞ որ նրանք էլ իմ պես գցում են ատամի տակ ու չրթ, հա չրթ...

Բայց ես ատամնացավը հիշելով գլխավորը մոռացա: Բանն այն է, որ այդ գիշեր մայրիկիս խնամած կովերից երեքը ծնել էին, ու հենց այդ պատճառով էլ բոլորը հավաքվել էին գոմում:

Իմ լացը մի կողմից, նորածինների դառը մյուս կողմից: Ինձ ատամնաբույժ էր պետք, նրանց անասնաբույժ: Ոչ այս կար, ոչ այն: Իմ գլուխը ցավից խեր չէր, իսկ նորածիններն էլ սատկելու նշաններ էին ցույց տալիս: Մայրս շփոթվել, մնացել էր:

— Բա ի՞նչ անեմ, բալաս ջան, — ասում է, — ո՞նց անեմ. քեզ ո՞նց գյուղ տանեմ: Էնպես էլ թարսություն կլինի՞:

Ու որ տեսա մորս լացակումած դեմքը, հարգելի խմբագրություն, մի կերպ ցավը տարա ու ատամներիս կուչ տալով ասացի, որ գնում եմ քնելու: Դուրս եկա թե չէ, ցավն այնպես զոռեց, որ հանկարծ խելքիս փչեց ուղիղ գյուղ գնալ՝ ատամնաբույժին գտնելու: Դուրս՞ եմ, ո՞նց եմ գնում: Մութը կոխել է չորս բոլորը, ու ես վախից վազ եմ տալիս: Էն գեղեցիկ շիրմաքարերը, որոնց վրա թռչկոտել ու տարացել էի ցերեկով, մեկ գազաններ էին աչքիս թվում, մեկ էլ սոսկալի ուրվականներ: Ու քամին ոնց է վզզում. ու՜, ու՜: Կածանը, որ Կարոն է բաց արել իր մեքենայով, մեկ երևում է, մեկ՝ կորչում: Նա ճանապարհին կանգ առա գայլերի ոռնոցից: Մտածում եմ, գնա՞մ, թե վերադառնամ: Ու գնացի. ինչքան գնացի, այնքան ատամիս ցավը թեթևացավ: Վախից էր, հարգելի խմբագրություն, վախից: Վախը այնպիսի մի բան է, որ ամեն մի ցավ մոռացնել է տալիս: Ու երբ ատամիս ցավը թեթևացավ, ու մեկ էլ որ տեսա Գյուղսովետի ճակատին վառվող լույսը, հանկարծ հիշեցի նորածին հորթերին.



Հիշեցի ու իմ նկարած ծառի մոտից մի շնչով վազ տվի անասնաբույժ Գևորգյանենց տուն:

Մնացածը ի՞նչ գրեմ. մարդը շատ զարմացավ, իմանալով, որ ես այդ կես գիշերին, մեն-մենակ, ֆերմայից կտրել-անցել եմ ութ կիլոմետր ճանապարհ: Էլ ժամանակ չունեցա, որ ես ատամիս պատմությունն անեմ: „Կեցցե՛ս, Հովիկ" — ասաց ու ձին դուրս քաշելով, ինձ էլ թարքին առած թռավ ֆերմա...

Հորթուկների դրությունը լավացավ. մայրիկս իր խնամած կովերի և գերազանց աշխատանքի համար փարոս կոչեցին, ու ինձ էլ փարոսի տղա...

Ահա ամբողջ պատմությունը, հարգելի խմբագրություն. ահա թե ինչպես ես էլ հերոս դարձա...

Բայց ես ինչ հերոս եմ. չէ՞ որ այդ բոլորը ատամիս ցավից էր...

Ու ինչքան էլ որ ես այդ մասին պատմեցի մեր հայերենի ուսուցչին, նա թե՝ ոչինչ, դու, — ասում է, — Հովի՛կ, լավ գործ ես կատարել և այնքան համով պատմեցիր, որ վատ չէր լինի մի փոքրիկ պատմվածք դարձնել „Պիոներ"-ի համար:

Այս բոլորը որ պատմեցի, գրե՞մ:

Բայց ես չէ՞ որ ոտանավորներ եմ սիրում գրել:

Եվ բացի այդ, հարգելի խմբագրություն, ես որ այդպես պատահական կերպով փրկեցի հորթուկներին, հիմա այնպես եմ սիրում նրանց, որ ասել չեմ կարող: Հիմա, չգիտեմ, ոտանավո՞ր գրելը լավ է, թե՞ հորթուկներին սիրելը: Այնպես լավիկն են, այնպես խուճուճիկը ու այնպես են բառաչում, որ մարդու խելքն է գնում...

Ու մտածում եմ, ի՞նչ վատ բան կլինի, որ ես էլ հենց ֆերմայի աշխատող դառնամ և այդպես միշտ սիրեմ ու խնամեմ հորթուկներին:

Երեքի անունն էլ ես եմ դրել. մեկը Զալիկն է, մյուսը Խուճուճիկը, իսկ երրորդը, որ շատ է բառաչում, անունը Բեբի եմ դրել: Ոտանավոր էլ եմ գրել դրանց մասին, բայց չեմ ուղարկի. ո՞վ գիտի, գուցե մի օր ուղարկեմ: Բայց շատ եմ խնդրում, նրանց այս նկարները տպեք, որ բոլորն էլ տեսնեն, թե ինչքան սիրունիկ հորթուկներ են:

Ահա.

Լավն են, չէ՞: Խուճուճիկի պոչի համար թղթի վրա տեղ չհերիքեց. խնդրում եմ, եթե կտպեք, ասեք ձեր նկարչին պոչը ավելացնի: Ես այն նկարել եմ առանձին. չլինի՞ թե վրձինի տեղ գնեք, ինչպես որ ֆերման էիր տարյակի բնով ծառի նմանեցրել:

Հիմա, հարգելի խմբագրություն, ես ամեն օր անհամբեր սպասում եմ „Պիոների" համարին, իմ Զալիկի, Բեբիի և Խուճուճիկի նկարներին:

Գյուղ Հովտաշեն.

Հովիկ Դաղումյան.

(չորրորդ դասարան)

# ՈՐՈՏԱՆԻ ՍԱՆՁԱՀԱՐՈՒՄԸ

ՅՈՒՐԻ ՄԱՐՅԱՆ

Նկ. ՀԵՆՐԻԿ ՍԻՐԱՎՅԱՆԻ

## ԳԵՂԱՏԵՍԻԼ ԱՇԽԱՐՀ

Ես չգիտեմ, իմ պատանի ընթերցող, դու եղե՞լ ես Զանգեզուրում: Սքանչելի վայր է: Ասես բնությունը դիտմամբ ամեն ինչ ստեղծել է այնպես, որ մարդ զարմանա յուրաքանչյուր քայլափոխին: Այստեղ կան և՛ խոժոռ ժայռեր, և՛ քարանձավների խառնաշփոթ լաբիրինթոսներ, և՛ քամուց ծեծկված քարակերտ, հրաշալի ֆիգուրներ, և՛ խոր-խոր կիրճեր, և՛ ոսկի ծաղիկների գունեղ բացատներ, և՛ թավուտ անտառներ...

Զանգեզուրը նաև պատմական ճակատամարտերի, անմատչելի ամրոցների և ժողովրդական հերոսների վայր է:

Զանգեզուրով անցնում է մըռայլ ու արընթաց, անսանձ և կատաղի, անլռելի Որոտանը: Հոսում է Որոտանը, թռչում քարերի վրայով, գալարվում կիրճի խորքում...

Եվ այդպես, դարեր շարունակ:

Բայց ահա...

## ԳԱՐՆԱՆ ԾԻԾԵՌՆԱԿԸ

Այս գարնանը Սիսիան, Գորիս, Ղափան և Զանգեզուրի գյուղերն է թռչում միմյանց շատ նման հեռագրերի մի հոսանք: «Շնորհավորում եմ: Որոշումն ընդունված է, կառուցումն ըսկըսվում է», «Ուրախ եմ հայտնել, որ շինարարությունն ըսկըսված է: Մանրամասնությունը նամակում», «Մինիստրների Սովետը որոշում է ընդունել: Աշխատանքները կսկսվեն մոտ ժամանակներս...» Հեռագրերին նման էին նաև հեռախոսային խոսակցությունները.

— Ալլո՛, ալլո՛: Սիսիա՞նն է... Հյուրանոցում սենյակ վերցրեք, վաղը կմեկնենք... Ի՞նչ... այո, այո, որոշումը կա, ամեն ինչ կարգին է...

Այս բոլոր հեռագրերը, հեռախոսային խոսակցությունները վերաբերում էին Հայկական ՍՍՌ Մինիստրների Սովետի 1961 թվականի ապրիլի 8-ի որոշմանը: Եվ այդ որոշումը կոչվում էր այսպես. «1961 թվականին Տաթևի հիդրոէլեկտրակայանի շինարարությունն սկսելու մասին»:

Որոշման լուրը գարնան արագաթև ծիծեռնակի նման հասավ Զանգեզուր և անմիջապես ուրախացրեց բոլորին:

## ՏԱՐԵԳՐՈՒԹՅԱՆ ՍԿԻԶԲԸ

Այսպիսով, 1961 թվականի ապրիլի 8-ից սկսվում է Տաթևի հիդրոէլեկտրակայանի շինարարության պատմությունը: Եթե երբևէ գրի առնվի այդ կառույցի տարեգրությունը, ապա առաջին էջերը մոտավորապես այսպիսի տեսք կունենան:

**1961 Թ. ԱՊՐԻԼԻ 8:** Մինիստրների Սովետի որոշումը շինարարությունն սկսելու մասին:

**1961 Թ. ԱՊՐԻԼԻ 17:** Ծնունդ է առնում կայանի շինարարների կոլեկտիվը: Առայժմ այդ կոլեկտիվը բաղկացած է... մեկ մարդուց՝ Նորակառույցի պետ Սիսակ Սարգսյանից: Ժամանել է, առայժմ իրեն զգում է հյուրի պես, շուրջն է նայում, ծանոթանում մարդկանց և տեղանքի հետ:

**1961 Թ. ԱՊՐԻԼԻ 26:** Շինարարներն արդեն յոթ հոգի են: Ապրում են հյուրանոցում: Առայժմ ոչ գրասենյակներ կան և ոչ էլ գրասեղաններ: Շինարարության պետը առանձնասենյակի փոխարեն ավտոմեքենա ունի, գրասեղանի փոխարեն՝ փափուկ պորտֆել, որտեղ կան փաստաթղթեր, գծագրեր, պլաններ և շինվարչության երկու կնիքները:

**1961 Թ. ՄԱՅԻՍԻ 12:** Վիթխարի հրետասայլով բուլդոզեր են տանում: Տանում են հարյուր, երկու հարյուր կիլոմետր: Ապա իջեցնում են հրետասայլից: Լեռնանցքում մեքենան բարձրանում է իր ընթացքով և հասնում շինարարության վայրը: Բուլդոզերավար Մարտուն Միրզոյանը սեղմում է լծակները, մեքենան մռնչում է, շուռումուռ տալիս հողը և գցում կառույցի առաջին ավանի առաջին տան հիմքը:

**1961 Թ. ՄԱՅԻՍԻ 23:** Աշխուժացել է Երևան–Սիսիան–Գորիս խճուղին: Շարասյուներով գնում են ինքնաթափ ավտոմեքենաները: Նրանք տանում են գերան, մեխ, ցեմենտ, հավաքովի փայտաշեն տների պատեր ու կտուրները:

1961 թ. ՀՈՒՆԻՍԻ 14: Վեցտուն: Ավարտվել է հիդրոէլեկտրակայանի առաջին վեց ժամանակավոր տների հավաքումը. չորսը Սիսիանի մոտ, իսկ երկուսը այնտեղ, ուր ապագա կայանից ոչ հեռու պիտի կառուցվի Որոտան ավանը: Այդ տներում եռում է կյանքը. հրամաններ ու կարգադրություններ, հեռախոսային զանգեր ու ավտոմեքենաների ազդեգրեր, խոսակցություններ ցեմենտի ու տախտակի մասին, ավազի ու քարի հանքերի, նոր ճանապարհների ու ջրատար խողովակների, բանվորական ճաշարանի համար նոր ստացված կահկարասիների մասին:

1961 թ. ՀՈՒՆԻՍԻ 23: Շինարարության պետի առանձնասենյակում խորհրդակցություն է: Նեղվածք է, աղմկում են, ծըխում, բորբոքվում, վիճում, համոզում, ապացուցում...

Այդ խորհրդակցության մասին ես ուզում եմ պատմել ավելի մանրամասնորեն:



## ԱՅՆ ՄԱՍԻՆ, ԹԵ ԻՆՉ ՊԻՏԻ ԼԻՆԻ...

Ճիշտն ասած՝ ոչ մի անսովոր բան չկար այդ խորհրդակցությունում: Եկել էին նախագծողներ, իրենց հետ բերել էին գծագրեր ու պլաններ, քարտեզներ ու նախահաշվային աղյուսակներ: Եվ ահա նրանք շինարարների հետ միասին հավաքվել էին քննարկելու ամենակարևոր, ամենաանհրաժեշտ և ամենահրատապ հարցերը:

Բայց մասնակիցների համար խորհրդակցությունը շատ սովորական էր: Այդպիսի խորհրդակցությունների նրանք առաջին անգամը չէ, որ մասնակցում էին: Ինձ համար, որպես կողմնակի մարդու, այդ սովորական գործնական խորհրդակցությունը նման էր մի ֆանտաստիկ պատմվածքի, որի հերոսները պայքարի մեջ են մտնում տարերքի հետ, վերափոխում բնությունը, սանձում լեռնային հեղեղները, մարդու կյանքը դարձնում ավելի ունևոր, գեղեցիկ և ուրախ:

Ես չեմ վերապատմի յուրաքանչյուրի ելույթը: Ես միայն կաշխատեմ նկարագրել այն տեսարանը, որն այդ ելույթներից պատկերվեց իմ աչքերի առաջ և ասես, կենդանություն տվեց սեղանի վրա փռված քարտեզին:

Կփոփոխվի Զանգեզուրի տեսքը: Մինչև 70 մետր բարձրության հասնող երեք ամբարտակները կկանգնեցնեն ջրերը և ջրի տակ թողնելով հսկայական տարածություններ, կառաջացնեն երեք ջրամբար: Ջրի տակ կմնան Տոլորս, Աշոտավան, Բազարչայ և Բոլխովկա գյուղերը: Բայց նրանց բնակիչների համար կըկառուցվեն նոր բարեկարգ ու գեղեցիկ ավաններ:

Որոտանի փրփրաբաշ ջրերը կաշխատեցնեն երեք հիդրոէլեկտրակայան, որոնց ընդհանուր հզորությունը կկազմի 460 հազար կիլովատ, այսինքն՝ այնքան, որքան Սևան-Հրազդան

կասկադի բոլոր կայանները միասին վերցրած:

Առաջինը կառուցվելու է Տաթևի ԳէՍ-ը՝ 200 հազար կիլովատ հզորությամբ, որը քիչ փոքր է Հայաստանի այժմյան ամենախոշոր կայանից՝ Գյումուշգէսից: Սա սովորական հիդրոկայանների նման չի լինելու: Ջուրը կայան կհասնի տասնութ կիլոմետր երկարությամբ լեռնային թունելի միջով, որը ամենաերկար խոտորվող թունելն է լինելու Սովետական Միությունում: Ջրի ճնշման բարձրությունը 600 մետր է, որպիսին դեռ չկա մեր երկրում:

Այդպիսի կայան կառուցելու համար հարկավոր են հազարավոր բանվորներ, տեխնիկներ և ինժեներներ: Նրանց համար Սիսիանում կառուցվելու են նոր տներ, իսկ Որոտան ավանից բացի, նախկին Շամբի և Շինուհայրի մոտ հիմք կդրվեն նոր ավանների: Հարկ կլինի կառուցել 30 կիլոմետր նոր ճանապարհ, նույնքան էլ ջրատար ուղի, էլեկտրական լուսավորություն, հեռագրա-հեռախոսային գծեր:

Կառույցին անհրաժեշտ նյութեր մատակարարելու համար, հարկավոր են արտադրական նոր ձեռնարկություններ: Շինուհայր գյուղում երևան կգան երկաթբետոնե իրերի գործարան, ավազահանք, փայտամշակման ֆաբրիկա, ավտոտրանսպորտային և էքսկավատորային պարկեր, Սիսիանում՝ բնակարանաշինական, մեխանիկական և բետոնի գործարաններ, Գորիսում՝ փայտամշակման մեծ ֆաբրիկա... Եվ շատ ու շատ այլ ձեռնարկություններ:

Ահա թե ինչպիսին է այդ վայրերի մոտ ապագայի պատկերը, որ գծագրվեց այդ խորհրդակցությունում:

## „ԲԱՐԻ ԳԱԼՈՒՍՏ“

Իմ պատանի ընթերցող, երբ դու բաց կանես այս ամսագիրը, Երևան — Սիսիան ավտոբուսով կառույց կմեկնեն նոր ինժեներներ: Կադրերի բաժինը կձևակերպի նոր բանվորների փաստաթղթերը, տաս տոննանոց բեռնատարը ցեմենտ կկրի Որոտանի լեռնանցքով: Ես դա հաստատ եմ ասում, որովհետև այս տարվա գարնանից ամեն օր կառույց են մեկնում նորանոր ինժեներներ, ամեն օր ձևակերպվում է բանվորների փաստաթղթեր, ամեն օր այնտեղ բեռ է փոխադրվում:

Այդպես է, որովհետև կառույցը մեծ է: Եվ այդ մեծությունը ուրախացնում է զանգեզուրցիներին: Նրանք գիտեն, որ կառույցն իր հետ կբերի ժողովրդական տնտեսության բուռն ծաղկում, կբարձրացնի բնակչության բարեկեցությունն ու կուլտուրան: Ահա թե ինչու մոլեգին Որոտանը սանձահարելու համար Զանգեզուր մեկնած մարդկանց տեղացիները դիմավորում են սրտագին և ասում.

— Բարի գալուստ, ընկեր հիդրոշինարարներ:

# ԱՌԱՋԻՆ ՋԵՐՄԱԷԼԵԿՏՐԱԿԱՅԱՆԸ

*ԱՐՏՕ ԱՎԱԳՅԱՆ*

*Նկ. ՀԵՆՐԻԿ ՍԻՐԱՎՅԱՆԻ*

*Ջոկատը որոշեց հերթականորեն ծանոթանալ ռեսպուբլիկայի յոթնամյակի կառույցներին:*

*— Սկսենք ջերմային էլեկտրակայանից, — ասաց Ավետիսը, — հայրիկս այնտեղ է աշխատում, կբացատրի մեզ:*

*Եվ ահա № 4 տրամվայը պիոներներին տանում է Երևանի հարավ-արևելյան ծայրամասը, որ գտնվում է էլեկտրակայանի կառուցողների «քաղաքը»: Ընդամենը քառահարկանի տներից բաղկացած այս բանավանը շոյում է մարդու աչքը: Տները հիացնում են իրենց համաչափությամբ:*

*Նրանք անցնում են ջերմաէլեկտրակայանի շինարարության վարչության, մեխանիկական արհեստանոցի, թթվածնի ու կարբիդի մատակարարող կայանի և շինանյութերի պահեստների առջևով:*

*— Ինչքա՜ն մեծ տարածություն է զբաղեցնում ջերմակայանը, — նկատեց ջոկատավար Վանո Սարգսյանը:*

*Իսկապես, այնտեղ, ուր նրանք կանգնած դիտում էին երկինք բարձրացած երկաթբետոնե սյուները, հինգ կիլոմետրից ավելի հեռավորության վրա վիշապի պես հևում ու փնչում էին հողափոր մեքենաները:*

*Պիոներները բանվորներից մեկին խնդրեցին կանչել ինժեներ Արթուրին՝ Ավետիսի հայրիկին:*

*— Էքսկուրսիա՞ եք եկել, — բարևելուց հետո ասաց բանվորներից մեկը: — Հաճախ եկեք: Ան-*

ցած տարի մեզ մոտ էին եկել № 83 դպրոցի պիոներները։ Մեր բրիգադը բարեկամացավ նրանց հետ։ Երկու ամիս նրանք մեզ օգնել են շինարարության աշխատանքներում։

Տեսնելով, որ ընկեր Արթուրն ուշանում է, զրուցակիցը՝ Ֆերդինանդ Պարսամյանը, որն ինչպես պարզվեց «Կոմունիստական աշխատանքի բրիգադի» բրիգադավարն է, զրույցը շարունակեց։ Նա պատմեց, թե ինչպիսի դժվարություններ են հաղթահարել մինչև «հալեցրել» են հսկա բլուրները և ստեղծել շինարարության այս հարթ հրապարակը։

— Ամենից հետաքրքիրը, — շարունակեց բրիգադիրը, — տեղի ունեցավ գլխավոր կորպուսի հիմքը փորելու ժամանակ։ Հանկարծ գետնի տակից ջուրն այնպիսի ուժգնությամբ շատրվանեց, որ մեքենավարը հազիվ ազատվեց խեղդվելուց։ Մի քանի րոպեում հսկա փոսը լցվեց ջրով։ Այժմ այդ ջուրը խողովակներով գնում է մոտակա դաշտերը, իսկ հետագայում ավելի շատ պետք կգա։ Դրանով կջրվեն թե՛ ջերմաէլեկտրակայանի ծաղկանոցը, և թե՛ պտղատու այգին, որի հիմքերը դրել են մեր բարեկամ պիոներները։

Երևաց ինժեներ Արթուրը։

— Բարև՛, պիոներնե՛ր, — ժպտալով ասաց նա։ — Եկեք ծանոթանանք մեր կայանի հետ։ Սա առաջին ջերմաէլեկտրակայանն է Հայաստանում։ Իր հզորությամբ այն հավասար է Սևան-Հրազդան կասկադի 5 հիդրոկայաններին։ Նրա էներգիան ավելի էժան կլինի, որի հետևանքով էլ էժան կլինեն գործարանների ու ֆաբրիկաների բաց թողած արտադրանքը, բաղնիքների, լվացքատների ծախսերը։ Երբ ջերմաէլեկտրակայանը պատրաստ կլինի, նորից մեզ մոտ եկեք։ Ինչ խոսք, այն ժամանակ մի քիչ էլ մեծացած կլինեք և հեշտ կլինի ըմբռնել կայանի «գաղտնիքները»։ Հիմա ասեմ միայն, որ այն կառուցված է այնպես, որ աշխատի անխափան, մարդու սրտի պես անդադար։ Որպես հումք, որպես վառելանյութ մեր էլեկտրակայանը կօգտագործի Ղարադաղից մեզ մոտ եկող բնական գազը, իսկ եթե պատահի, որ տեխնիկական կամ այլ պատճառներով ընդհատվի գազի հոսանքը, ջերմաէլեկտրակայանը կաշխատի վատորակ ածուխով և Կույբիշև քաղաքից բերված մազութով։ Ցույց տալու համար, թե որքան հզոր է մեր էլեկտրակայանը, ասե՛մ, որ նման դեպքում մի օրվա մեջ նա կծախսի մոտ 2800 տոննա մազութ։ Ջերմաէլեկտրակայանը շատ բանով կփոխի մեր քաղաքամայր Երևանի տեսքը, մեծ չափի էլեկտրոէներգիա տալուց բացի, նա տաք ջրով ու գոլորշով կապահովի քաղաքի հարավային շրջանի քիմիական արդյունաբերության, պլաստմասսայի և արհեստական թելի գործարանների աշխատանքը։



Քաղաքի մեծ մասի կոմունալ-կենցաղային շենքերը, անպայման նաև ձեր բնակարանները ամառ ու ձմեռ կունենան տաք ջուր։

— Ընկե՛ր Արթուր, ջերմաէլեկտրակայանը ե՞րբ շահագործման կհանձնվի, — հարցրեց Ալբերտը։

— Առաջին ագրեգատը շահագործման կհանձնվի 1962 թ. սկզբներին, իսկ ամբողջապես կավարտվի 1965 թվականին։

Լսվեց գնացքի սուլոցը։

— Ա՛յ, կեցցե՛ր, — խոսքը շինանյութ տեղափո-

խաղ գնացքի աշխատողներին ուղղելով՝ շարունակեց ինժեները. — լավ են սկսել աշխատել համագումարի նախօրյակին: Բերել են ջրախողովակները մեկուսացնող նյութերը: Այդ չափազանց կարևոր է: Ձմեռը խիստ է լինում Երևանում: Ինչպես գիտեք, մեր ջերմաէլեկտրակայանը ոչ գլխարկ ունի, ոչ շապիկ, այսինքն՝ կառուցվում է բաց երկնքի տակ: Հենց վաղվանից կսկսեն մեկուսացնել և փաթաթել կաթսաներն ու ջրատար խողովակները:

— Ուրիշ հարցեր չկա՞ն:

Երեխաները լռեցին:

— Իսկ ասեք ջուրը որտեղի՞ց պիտի բերեք, տաքացնեք ու բաց թողնեք քաղաքին, — հարցրեց Դավիթը, էքսկուրսանտներից ամենափոքրը:

Ինժեները ծիծաղեց:

— Գետնի տակից դուրս եկած մեր սեփական ջրանցքից վերցրած ջուրը կստանցնի կոնդենսատորները և նորից կթափվի ջրանցքը: Ջրի խնայողության համար կօգտագործվեն նաև քիմիական արդյունաբերության օգտագործած ոչ պիտանի ջրերը:

— Երեխանե՛ր, — ասաց դասղեկներից մեկը, — ընկեր Արթուրը մեզ ծանոթացրեց ջերմաէլեկտրակայանի շինարարության, նրա հեռանկարների հետ: Եկեք շնորհակալություն հայտնենք նրան ջերմ վերաբերմունքի համար:

— Շնորհակալություն, — միաբերան բացականչեցին պիոներները:

— Ընկե՛ր Արթուր, — մի րոպե, — ասաց Սամվելն ու վերցրեց լուսանկարչական ապարատը:

Չորս օրից հետո լույս տեսավ դպրոցի պատի թերթը «Մեր ջերմաէլեկտրակայանը» վերնագրով: Թերթի մեջտեղը ինժեներ Արթուրի նկարն էր՝ գլխավոր կորպուսի ֆոնի վրա: Թերթում հոդվածներ ունեին Ռուզաննան, Հարությունը, Համլիկը և ուրիշները: Ամենից հետաքրքիրը Բակուր Բագրատյանի բանաստեղծությունն էր՝ «Դու ջերմ մնաս, իմ Երևան» վերնագրով, որը բոլորը բերանացի էին արել:

# „ՎՈՍՏՈԿ-10"

ՍԱՐԳԻՍ ԽԱՐԱՉՅԱՆ

Ծանր նավը՝ «Վոստոկ երկու»,
Չափեց երկնի անծիր ուղին,
Շրջեց անհուն տիեզերքում,
Իջավ նորից նա մայր հողին:
Նա ամենքիս համար բերեց
Ուրախության մի նոր թրթիռ,
Հաղթանակը մեր վեհ ու մեծ
Թռավ գնաց երկրե երկիր:
Հիմա սրտով գիշեր-ցերեկ
Թև ենք տալիս մեր երազին,
Չէ՞ որ նավը «Վոստոկ երեք»
Պիտի թռչի մինչև Լուսին:
Գնա պիտի ու դառնա նա
Այս օրերի հրով անմար,
Եվ այնտեղից բերի իր հետ
Լուսնաքարեր Երկրի համար:
Գալիքների հանդեպ հիմա
Բաց է ճամփան տիեզերքի.
«Վոստոկ չորսը» Լուսնի վրա
Մեր բերկրանքը պիտի երգի:

Մեծ կլինի «Վոստոկ հինգը»,
Թող ամեն ոք այդ իմանա,
Նա ճեղքելով ողջ երկինքը՝
Դեպի հեռու Մարս կգնա:
Այանքը հիմա լի է երգով
Հայացքի տակ այս արևի,
«Վոստոկ վեցը» երկրիս ձեռքով
Վեներային կբարևի:
Դեռ պիտի գան հրաշք օրեր,
Օրեր գնգուն ու քաղցրականչ,
«Յոթը» պիտի բերի հյուրեր,
Որ ետ տանենք «ութով» նրանց:
«Վոստոկ իննով» պիտի գնամ,
Խինդի խարույկ վառեմ Մարսում,
Շրջեմ այնտեղ, որ իմանամ
Ինչ լեզվով են մարդիկ խոսում:
«Վոստոկ տասով» հրաշաթև
Կլրացնենք կյանքում թերին,
Լույս կտանենք, կտանք արև
Հեռվում սառած Յուպիտերին:




# «ՄՏԱԾՈՂ» ՄԵՔԵՆԱՆԵՐ

Մեր օրերում մարդը ֆիզիկական ծանր աշխատանք շատ քիչ է կատարում, որովհետև նրան օգնության են եկել մեքենաները: Իսկ կա՞ն արդյոք այնպիսի մեքենաներ, որոնք օգնեն մարդկանց մտավոր աշխատանքին:

Պարզվում է, որ կան:

Սովետական գիտնականները ստեղծել են այնպիսի բարդ սարքավորումներ, որոնք մարդկանց փոխարեն շատ կարճ ժամանակամիջոցում կատարում են ամենաբարդ հաշվումներ, թարգմանություններ: Գոյություն ունեն մեքենաներ, որոնք խաղում են շախմատ և վերջապես, արդեն կառուցվել են այնպիսի բարդ սարքավորումներ, որոնք «թափանցելով» մարդու սրտի հյուսվածքների, երիկամների, լյարդի և անգամ կենտրոնական նյարդային սիստեմի մեջ, կարողանում են ուսումնասիրել նրանց բարդ աշխատանքը, ախտորոշել զանազան հիվանդություններ: Այդ զարմանալի մեքենաների մասին վերջերս ստեղծված գիտությունը կոչվում է կիբեռնետիկա: «Կիբեռնոս» հունարեն նշանակում է ղեկավարել, կառավարել:

Կիբեռնետիկայում օգտագործվում է մարդու ուղեղի գործունեության օրենքը: Հայտնի է, որ օրգանիզմում կատարվող բոլոր երևույթները, ինչպես նաև արտաքին աշխարհից եկած բոլոր գրգիռները՝ լույսը, ցուրտը, ջերմությունը, ձայները, մեր նյարդերի միջոցով հաղորդվում են ուղեղին, իսկ այնտեղից գալիս են համապատասխան հրամաններ, որոնք կարգավորում են բոլոր օրգանների աշխատանքը:

Կիբեռնետիկական մեքենաներում գոյություն ունի ճիշտ նույնպիսի փոխադարձ կապ:

Ահա մի հետաքրքիր օրինակ:

Քաղաքի փողոցների խաչմերուկներում կախված են սովորական լուսաֆորներ: Հայտնի է, որ լուսաֆորները ղեկավարում են ինքնաշարժ սարքերը ամ փողոցի երթևեկությունը կարգավորող միլիցիոնները: Բայց ահա մի նոր լուսաֆոր, որը զարմանալի հատկություն ունի: Լուսաֆորն ուղղակի «տեսնում է», թե ո՛ր փողոցում են ավելի շատ հավաքվել տրամվայներ, ավտոբուսներ ու տրանսպորտի մյուս ձևեր և «մտածելով», ճիշտ ժամանակին բացում ճանապարհը: Այլ կերպ ասած, այս նոր լուսաֆորը կիբեռնետի-



կական սարքավորում է և մարդու նման կարգավորում է մի հսկա փողոցի երթևեկությունը: Այս կատարվում է ճիշտ այնպես, ինչպես կարվեր մարդու կողմից: Փողոցում կուտակված տրանսպորտի տարբեր ձևերը ընկալվում են համապատասխան սարքավորման միջոցով: Հետո ստացվում է կարգադրությունը, և ապա վառվում է լուսաֆորի համապատասխան լույսը: Իսկ «արյան գնդիկներ հաշվող մեքենան» կառուցված է հետևյալ հիմունքների վրա: Էլեկտրոնային սարքավորումը իր վրա ունի հատուկ հարմարանք, որը ճառագայթներ է արձակում: Այդ ճառագայթները ակնթարթային արագությամբ կարողանում են ջոկել արյան կարմիր և սպիտակ գնդիկները, և ապա հաղորդում ֆոտոէլեմենտին: Այստեղ գրանցվում է բազմամիլիոն մարմնիկների քանակը:

Կարդալով այս բոլորը, դուք կհարցնեք.

— Մի՞թե խոսք մեքենան առանց մարդու օգնության կարող է մտածել: Մի՞թե նա այդքան խելոք է:

— Ո՛չ, մեքենան մարդուց խելոք չի կարող լինել: Բայց պետք է ասել, որ այսօր կիբեռնետիկան կատարում է դեռ առաջին իր քայլերը, որ մարդիկ դեռ ավելի բարդ ու հրաշք մեքենաներ կստեղծեն, բայց այդ մեքենաները ինչքան էլ որ կատարելագործված լինեն, առանց մարդու միջամտության նրանք աշխատել կամ «մտածել» չեն կարող: Մեքենան կարող է օգնել, բայց ղեկավարել մարդուն երբեք հնարավոր չէ: Չէ՞ որ հենց մարդն է, որ իր ուղեղի զորությամբ ստեղծում է «մտածող» մեքենաներ:

Բազմաթիվ մեքենաներ և գործիքներ կան, որոնք օգնում են բժշկին, բայց հիվանդին բուժողը միայն և միայն կենդանի մարդն է, բժիշկը: Ոչ մի մեքենա, ինչքան էլ նա կատարելագործված լինի, մարդու հետ մրցել չի կարող:

Մ. ԽԱՉԱՏՐՅԱՆ

(Բժշկական
գիտությունների
թեկնածու)

## ԳՈՐԾԻՔ — ՀԵՌՈՒՍՏԱՑՈՒՅՑ

Հնարավո՞ր է արդյոք դիտել մետաղե շինվածքի ներսը և տեսնել նրա ամենաաննշան ճաքվածքը կամ ծակոտիները:

Անշուշտ, հնարավոր է: Եվ նեթե դիտողը նույնիսկ գտնվի մի այլ շենքում, դարձյալ ոչ մի մանրուք չի խուսափի նրա աչքից:

Այդպիսի մի սարք են պատրաստել սովետական գիտնականները: Արտաքուստ այն նման է սովորական հեռուստացույցի:








**Ո**ւզբեկստանի գիտնականների մի արշավախումբ Տյան-Շանի լեռներում հայտնաբերել է խնձորենիների մի արտասովոր պուրակ, որտեղ բոլոր ծառերի պտուղները նույն մեծությունն ու գույնն ունեն: Հանգամանորեն ստուգելով, նրանք պարզել են, որ այդ բոլոր 600 ծառերը՝ բուսնել են միևնույն ճյուղավորված արմատից:

**Ե**րբ ինքնաթիռը սլանում է ժամում 2400 կիլոմետր գերձայնային արագությամբ, նրա թևերն ու իրանը տաքանում են մինչև 400 աստիճան, չնայած շրջապատի օդի ջերմաստիճանը մինուս 60-ից ցածր է լինում:

**Ա**նտարկտիդայում գոյանում են այնպիսի հսկա սառցալեռներ, որոնցից մի քանիսի երկարությունը հասնում է 180 կիլոմետրի, գրեթե նույնքան էլ լայնություն ունեն: Այդ հսկաները ջրի մակերևույթից բարձրանում են 40 մետր, իսկ ջրի մեջ են սուզվում մինչև 300 մետր: Հետաքրքիր է, որ «ջրի պաշարը» այդպիսի սառցալեռներում համապատասխանում է նույնիսկ այնպիսի հզոր գետերով տարիներ հոսած ջրի քանակին, ինչպիսին Վոլգան է:

**Բ**արձր ճնշման տակ ջուրը սառեցնելով, ստացվում է այնպիսի սառույց, որը սկսում է հալվել 82 աստիճան տաքության դեպքում: Դրա համար այդպիսի սառույցը կոչվում է տաք սառույց:

## ԱԿԱՆԱՆԵՏԱՅԻՆ ԿՐԱԿ

Երիտասարդ Կիրովսկ քաղաքը երեսնական թվականներին ենթարկվեց ձնահյուսերի հարձակմանը: 1935 թվականի դեկտեմբերին ձնահյուսի մի հսկա զանգվածով քաղաքի ծայրամասում կործանվեցին երեք տուն: Տարերքը մարդկանց ահավոր մարտի էր կոչում:



Եվ մարտահրավերն ընդունվեց: Հաջորդ տարում, կառավարության որոշմամբ, Կիրովսկում ստեղծվեց երկրում առաջին ձնաօդերևութաբանական կայանը: Սկսվեց ձնահյուսերի գոյացման պատճառների ուսումնասիրությունը և նրանց դեմ պայքարելու միջոցների որոնումը:

Յուրաքանչյուր աշնան վերջում, առաջին ձյան հայտնվելուց առաջ օդերևութաբանները սկսում են ձնահյուսերի դեմ գրոհի նախապատրաստվել. ուշադիր հետևում են հողի և օդի ջերմաստիճանին, իմանում են, թե ինչ խորությամբ է սառել հողը: Իսկ երբ տեղում է ձյունը՝ սկսվում է կայանի աշխատողների խիստ եռուզեռի շրջանը: Կարևոր է իմանալ լեռնալանջերին տեղացող ձյան և՛ ձևը, և՛ տեսակը:

Վերջապես, գիտնականներն ասում են՝ ժամանա՛կն է: Դա նշանակում է, որ հիմա շահավետ է արհեստական միջոցով փլել ձնահյուսը, քանի այն դեռևս իր մեջ չի կուտակել ահավոր չափերի հասնող ուժ: «Թերի տեսակի» ձնահյուսից ոչ մի փորձանք չի առաջանա:

Սովորաբար ձյունաշերտը ուժգնորեն ցնցելու համար օգտագործում են ականի պայթուցիկ ուժը: Հովտում կանգնեցնում են ականանետը... Կրա՛կ... Լեռան վրա զայթքում է ձյունեղեն հողմ. ձնահյուսը սահում է ներքև և լուռ տարածվում լեռնալանջի ստորոտում: Քաղաքը կարող է հանգիստ քնել. կայանի գիտնականները հուսալիորեն պաշտպանում են նրան ահավոր տարերքից:

## ՀԵՌՈՒՍՏԱՏԵՍ ԱՉՔԻ ՕԳՆՈՒԹՅԱՄԲ

Մենք գտնվում ենք Մագնիտագորսկի մետաղաձուլման կոմբինատում: Գլխավոր դիսպետչերը մեզ հրավիրում է հեռուստացույցի էկրանի մոտ: Սեղմում է բազմաթիվ կոճակներից մեկը, և մենք տեսնում ենք մարտենյան ցեխը: Դիսպետչերը նայում է ժամացույցին: Ամեն ինչ կարգին է: Հալումը կատարվում է ճիշտ, սահմանված գրաֆիկի համաձայն:

Արդյոք պահեստային լոկոմոտիվը ժամանակի՞ն է մատուցվել՝ պատրաստի արտադրանքի տեղափոխման համար:

Կարծես հրաշքով էկրանի վրա հայտնվում է դեպոն, և մենք տեսնում ենք, թե ինչպես լոկոմոտիվը դուրս է գալիս դարպասից:

Հեռուստատեսության շնորհիվ, դիսպետչերը հնարավորություն ունի ցանկացած րոպեին դիտել ցեխը և անհրաժեշտ կարգադրություններ անել: Բայց հեռուստատեսության հաղորդիչները օգնում են ոչ միայն գլխավոր դիսպետչերին, նրանցից օգտվում են նաև ցեխերի դիսպետչերները:

# „Լույս-15"

ԴԺՎԱՐ է վիրաբույժի գործը: Որքան էլ փորձված ու տաղանդավոր բժիշկ լինես, դարձյալ քո վիրահատման հաջողությունը շատ բանով կախված կլինի աշխատանքային պայմաններից: Դրա համար պահանջվում է պահպանել գործիքների, վիրակապական նյութերի և այլ պարագաների բացարձակ մաքրություն: Անհրաժեշտ է նաև լույս: Այո, պայծառ լույս: Չէ՞ որ վիրաբույժը կտրում ու կարում է երբեմն մարմնի ամենանուրբ մասերը: Եվ նա իրավունք չունի երբեք սխալվելու: Նա պետք է ամեն ինչ լավ տեսնի:

Եվ ահա, տեխնիկական գիտությունների թեկնածու Է. Բ. Ռոզենֆելդի ղեկավարությամբ ստեղծվել է մի լամպ, որ կոչվում է «Լույս—15»:

Այդ վիրաբուժական «արևը» մի մեծ, կլոր ափսե է, որ դրված է վիրաբուժական սեղանին: Սեղմում ես կոճակը, և ահա լամպը անմիջապես սկսում է գործել: «Լույս—15»-ը ոչ միայն լուսավորում է ցանկացած անկյուն, այլև վերացնում է այն ստվերը, որ կարող է առաջանալ ձեռքից կամ գործիքից: Թափանցելով ապակայի ներսը, նրա ուժեղ ճառագայթները չեն կորցնում իրենց



պայծառությունը և լուսավորում են բոլոր անկյունները:

Ռեֆլեկտորի մեջ դրված է ֆիլտրը, որը փակում է ջերմության ճանապարհը:

Լամպի մեջ կան մոտ 20 անցքեր: Բայց դրանք բոլորն էլ լուսավորելու համար չեն: Դրանցից մեկի մեջ դրված է լուսանկարչական ապարատ, մյուսի մեջ՝ միկրոֆոն: Այժմ բժիշկներն ու ուսանողները կարող են դիտել վիրահատվող օրգանները, թեկուզ նրանք գտնվելիս լինեն վիրահատման սենյակից դուրս: Լամպի մեջ տեղավորված են գազով լցված խողովակներ. դրանք արձակում են մանիշակագույն ճառագայթներ, որոնք օժտված են կախարդական հատկությամբ. կենդանի հյուսվածքին ստիպում են լույս արձակել: Եվ քանի որ առողջ հյուսվածքի լուսարձակումը միանգամայն տարբերվում է հիվանդ հյուսվածքի լուսարձակումից, վիրաբույժը կարողանում է իսկույն գտնել չարորակ ուռուցքը և արագ կերպով կողմնորոշվել:

Ահա թե ինչպես են մեր ինժեներները օգնում բժիշկներին՝ նրանց դժվարին ու պատվաբեր աշխատանքում:



Մեքենաները ձգում են հալած ապակու սուր ու հրաշալի թելիկները և միահյուսելով դարձնում ամուր գործվածք: Այսպես է ստացվում ապակյա գործվածքը, որն օժտված է զարմանալի հատկություններով: Նայած պատրաստման եղանակին, այն կարող է լինել պինդ ու ամուր՝ ինչպես մետաղյա սալիկը, կամ ճկուն ու թեթև՝ ինչպես շղարշը, կարող է թույլ չտալ, որ խոնավությունն անցնի, կամ ընդհակառակը, լինել ջերմամեկուսիչ կամ էլեկտրական հոսանքի համար հուսալի մեկուսիչ:

Այսպիսի նոր նյութեր են ստացվում Ապակեթելերի համամիութենական գիտա-հետազոտական ինստիտուտում:

## ՊԱՏ... ԱՊԱԿԵԹԵԼԵՐԻՑ

Ահա նայում ենք այսօր կառուցվող բազմահարկ շենքերին և մտածում. արդյո՞ք պետք է այդքան շատ նյութ ու աշխատանք ծախսել, որպեսզի պատերը ջերմություն պահեն և լինեն ձայնային ալիքներից անհաղորդիչ: Ոչ: Ապակեթելերից պատրաստված 5 սանտիմետր հաստություն ունեցող նոր սալիկները փաստորեն կարելի է փոխարինել հաստ պատերով: Ապակեթելե սալիկների միջով չեն անցնում ո՛չ ձայնը, ո՛չ տաքությունը և ոչ էլ խոնավությունը: Այս նոր սալիկները կարող են շենքերում պահել ոչ միայն տաքությունը, այլև սառնությունը: Դրա համար էլ այն շատ ձեռնտու է օգտագործել նաև սառնարաններում:

## ՃՆՇՄԱՆ ՄԻՋՈՑՈՎ

Բնության մեջ չկա ոչինչ, որ չգտնվի մթնոլորտային ճնշման տակ: Մարդիկ վաղուց են դա ըմբռնել և զգացել, բայց այդ ճնշումը օգտագործելու փորձերը միշտ պսակվել են անհաջողությամբ:

Մեր դարի 30-ական թվականներին, երբ բուռն թափով սկսեցին զբաղվել ատոմի ուսումնասիրությամբ, գիտնականները այսպիսի խնդիր դրեցին. քանի որ նյութի ատոմի մասնիկները շարունակ շարժման մեջ են, հնարավոր չէ պարզ պատկերացում ունենալ դրանց մասին: Անհրաժեշտ է, որ դրանք, թեկուզ ժամանակավորապես, կանգնեն անշարժ վիճակում: Սովետական գիտնականները գտան, որ դրա համար ամենահարմար միջոցը բարձր ճնշումն է, որով միաժամանակ փոփոխության է ենթարկվում նյութի կառուցվածքը, ստեղծվում նույն նյութի նոր տեսակները:

Նման ճնշման միջոցով է առաջացել բնական ալմաստը:

Գիտությունն այժմ արհեստական ալմաստ է ստանում, որն ավելի ամուր է, քան բնականը: Ճնշ-

ման միջոցով գիտությունը օգնեց վերացնելու մետաղների անամեջությունը:

Ճնշման միջոցով նյութի նոր որակ ստանալու համար պատրաստում են հատուկ հարմարանք, որի կողքերի ճնշումը երեք անգամ ավելի բարձր է, քան վերևից եկող ճնշումը:

Ճնշումն այժմ օգտագործվում է գիտության համարյա բոլոր բնագավառներում: Բնագետները պարզել են, որ մի շարք վնասատու մանրէներ չեն դիմանում շատ թե քիչ մթնոլորտային ճնշման: Ճնշմանը չեն դիմանում նաև կաթնաթթվի մանրէները: Ուրեմն թարմ կաթը կարելի է ավելի երկար ժամանակ պահել, քան սովորական պայմաններում: Նույնիսկ կոբր տեսակի օձի թույնը ճնշման տակ դառնում է անվնաս: Ճնշման ճանապարհով դոնորային արյունը կարելի է ավելի երկար ժամանակ պահել:

Գյուղատնտեսները ճնշումն օգտագործում են սերմերի ծլունակությունն ու աճը արագացնելու համար:

## ՔԱՂՀԱՆՈՒՄ... ՕԴԻՑ

*Քիմիական քաղհանում... Դիտե՛ք, թե ինչպես է կատարվում այն: Մինչև վերջերս ոչ ոքի մտքով չէր անցնում, որ մոլախոտերը կարելի է ոչնչացնել նաև օդից, ինքնաթիռով թռչելիս: Իսկ այժմ դա ավիացիայի հաջողությունների մեջ ամենօրյա կիրառելի միջոց է: Մեր քիմիկոսները ստեղծել են հրաշալի նյութեր, որոնք սպանում են մոլախոտերը և միևնույն ժամանակ ոչ մի վնաս չեն հասցնում կուլտուրական բույսերին: Այդ նյութերով էլ ինքնաթիռից սրսկում են ցանքատարածությունները:*

*Մոլախոտերը եթե չոչնչացվեն, նույնքան վտանգավոր են բերքի համար, որքան վնասակար միջատներն ու հիվանդությունները:*

*Հարկավոր է մոլախոտերի դեմ պայքարել մինչև նրանց սերմերի հասունացումը, որոնք բացարձակապես կենսունակ են: Այդ սերմերը 10—12 տարի չեն կորցնում իրենց ծլունակությունը:*

*Ցանքսի քիմիական քաղհանումը 7—10 անգամ էժան է ձեռքի քաղհանումից, 15 անգամ քիչ աշխատանք է պահանջում և բերքն ավելացնում է հեկտարին 3—5 ցենտներով:*

*Քիմիկոսների ստեղծած այդ նյութերը, որոնք կոչվում են հերբիցիդներ, մեր երկրի քիմիայի մեծ հաջողություններն են. Նրանցով այժմ ոչ միայն պայքարում են մոլախոտերի, այլև արոտավայրերի անպետք թփուտների ու մանր անտառային բուսականության դեմ:*



## ԻՆՉՈ՞Ւ ԵՆՔ ԱՅՍՊԵՍ ԱՍՈՒՄ

**ԱՏԱՄՆԵՐՈՎ Է ՊԱՇՏՊԱՆՈՒՄ.** — Այդ դարձվածքը գալիս է այն ժամանակներից, երբ մարդիկ դեռ վայրենիներ էին: Այդ շրջանում ատամները նրանց առաջին զենքերն էին, որոնք գործադրվում էին ոչ միայն որսի, այլև իրար մեջ պատահող կռիվների ժամանակ: Հիմա այդպես են ասում, երբ պաշտպանում են մեծ կրքով, գործադրելով բոլոր միջոցները:

**ԿՐԱԿԻ՞ ԵՍ ԵԿԵԼ, ԻՆՉ Է.** — Այսպես ասում են, երբ դեռ չեկած, անմիջապես ուզում են ետ դառնալ: Առաջին անգամ մարդը կրակ ձեռք է բերել կայծակից այրվող ծառերից: Սակայն, հաճախ ուժեղ քամու կամ հորդ անձրևների ու հեղեղների պատճառով այն մարել է: Այդ դեպքում նախամարդիկ նոր կրակ ձեռք էին բերում կամ թշնամի ցեղերից կռվի միջոցով (դա հիանալի պատկերված է «Պայքար կրակի համար» գրքում) կամ խնդրում էին բարեկամ ցեղերից: Կրակ տանողը պետք է շտապեր, որպեսզի այն տեղ հասցներ: Ահա այստեղից էլ հենց ծագել է այդ արտահայտությունը:

**ԴԵՂԱՊԵՏԻ ՀԱՄԱՐ ԵՄ ՊԱՀԵԼ.** — Առաջներում բուժման նպատակով օգտագործվող որոշ դժվար ճարվող բաներ տրվում էին միայն դեղապետներին, այսինքն՝ դեղ պատրաստողներին, ժողովրդական կամ արքունական բժիշկներին: Այժմ դեղապետ բառի իմաստը չի էլ ըմբռնվում, որովհետև այդպիսիները վաղուցի վեր վերացել են: Այդպես ասվում է, երբ տալիս կամ մերժում են վերջին ունեցածը՝ հոգեպահուստը, որը ինչ-որ հազվագյուտ բան է:

**ԱՆԱՍՏԱԿԻՆ ԼԻՆԻ.** — Այսինքն՝ կորսված լինի: Կապված է Անի քաղաքի հետ, որի տակը ինչպես հայտնի է, պաշտպանական նպատակներով, փորված էր գետնուղիների մի ամբողջ սիստեմ: Այդ ստորերկրյա լաբիրինթում ընկնողը, եթե չգիտեր նրա գաղտնիքները՝ մուտքի ու ելքի ուղիները, ենթակա էր կորստյան:

**ՏՆԱԿՈՒ.** — Սկզբում եղել է տնակոռի, տնակոռ: Կապված է Արարատի լանջում եղած վաղեմի Ակոռի գյուղի հետ, որը երկրաշարժի հետևանքով 18-րդ դարի վերջերին հիմնահատակ ավերվել է: Նշանակում է՝ տունդ Ակոռի դառնա, նրա նման ավերվի:

Գ. ՔՈՉԱՐՅԱՆ



# ԻՄ ՔԵՌՈՒ ՀՐԱՅՐԸ

ԾՈՎԻԿ ՇԱՂԳԱՄՅԱՆ

Նկ. Ա. ԳՐԻԳՈՐՅԱՆԻ

Իմ քեռու անունը Հրայր է: Իմ քեռին էլ ավտոբուսային մարդ է, ինչպես շատերի քեռիները: Գիտեմ, նա ինձ շատ է սիրում, որովհետև միշտ քաղցր կոնֆետներ է բերում: Հենց որ մեր տուն է գալիս, միջանցքի դուռը բաց է անում ու մայրիկիս հարցնում.

— Սաթիկ, ո՞ւր է Վահանը:

Ես նրա ձայնը լսելուն պես՝ իսկույն թաքնվում եմ սենյակի դռան հետևը: Հետո, երբ նա դուռը բաց է անում, ես դուրս եմ թռչում ու գոռում.

— Բո՜...

Քեռի Հրայրը ետ-ետ է գնում, ձեռքը դնում է սրտին ու ծիծաղելով ասում.

— Ա՜յ թե վախեցա հա՜, հիմա սիրտս տեղից դուրս կթռչի:

Հետո նա հանգիստ, ձեռքը տանում է գրպանը, հանում նախշուն թղթերով փաթաթված կոնֆետներն ու մեկնում ինձ.

— Դե, բռնիր տեսնեմ, մե՛կ, երկո՛ւ, երե՛ք:

Ես հազիվ հասցնում եմ բոլոր հավաքել կոնֆետները: Պատահում է, որ կոնֆետների թղթերը մրոտ են լինում: Մի անգամ ես զզվեցի:

— Ինչո՞ւ ձեռքերդ լավ չես լվանում, հիմա այս սիրուն թղթերը չեմ կարող պահել, ուզեմ-չուզեմ գեն պիտի գցեմ:

— Է՜հ, Վահան, Վահան, ինչքա՜ն էլ լվանամ իմ ձեռքերը, էլի մրոտ կլինեն:

Ես բոլորովին մոռացել էի, որ իմ քեռին ամբարձիչ է, որ նա միշտ գիշերներն է գնում աշխատանքի և տուն է գալիս վաղ առավոտյան: Նա մեր տուն չի գալիս, իրենց տուն է գնում: Նրանց տունն էլ շատ հեռու է:

Բայց մի օր առավոտյան, քեռիս ապարանից ուղիղ մեր տուն եկավ: Ես դեռ անկողնում պառկած էի, մայրիկս էլ նոր էր վեր կացել ու փոքրիկ Լաուրիկին էր հագցնում:

— Յա՛, Հրայր ջա՛ն, ի՞նչ է պատահել, — վախեցած հարցրեց մայրիկս:

— Բան չի պատահել, Սաթիկ: Վահանը գորթնե՞լ է, — ասաց նա և այնպես արագ ներս մտավ, որ ես էլ չհասցրի մահճակալից ցատկել ու թաքնվել դռան հետևը: Նա նստեց անկողնու ծայրին, ձեռքը տարավ գըրպանը և կոնֆետների փոխարեն մի թերթ հանեց՝ կարմիր նկարներով:

— Ահա, այստեղ քո մասին է գրված, որ դու խելոք ու ընդունակ տղա ես, — գլուխս շոյելով ասաց նա:

Ես հանկարծակիի էի եկել, ուրախությունից աչքերս շաղվել էին: Ճիշտ որ, թերթի առաջին էջում նկարված էր ցուցահանդեսի իմ պատրաստած արբանյակի մոդելը և գրված էր. «Վահան Սարգսյան»: Հետո ուրիշ շատ բաներ էր գրված: Մի քանի անգամ կարդում էի տողերը, բայց ոչինչ չէի հասկանում: Ես փաթաթվեցի քեռուս պարանոցով, նայեցի նրա ձեռքերին: Ոչ, իմ քեռին սովորական քեռի չէ, ինչպես շատերի քեռիները: Եվ ինչ լավ է, որ իմ քեռու ձեռքերը մրոտ են: Եթե հանկարծ նրա մրոտ ձեռքերը չլինեին, այդպես, առավոտյան շուտ, ո՞վ կիմանար իմ պատրաստած մոդելի, մեր դըպրոցի ցուցահանդեսի մասին: Չէ՞ որ իմ քեռին է տպագրել այն հազարավոր կարմիր նկարներով թերթերը, որոնք պետք է ամեն տեղ լինեն՝ տներում, գյուղերում: Հիմա հայրիկն էլ գործարանում կկարդա իմ մոդելի մասին, Սամվելյանն էլ կիմանան, որ Հրայր քեռու քրոջ տղան լավ մոդելիստ է: Բայց ոչ: Հրայր քեռու մասին այստեղ ոչինչ էլ չի գրված: Ափսո՜ս: Բա կարդացողներն ինչպե՞ս իմանան, որ Վահանը մի քեռի ունի, որ այսպիսի թերթեր է տպագրում: Նա աշխատում է միշտ գիշերները, երբ բոլորը քնած են լինում, իսկ առավոտյան հոգնած քայլում է փողոցով, մտադեմ նայում թերթերի կըրպակների առաջ կանգնած գնորդներին: Ափսո՜ս, որ նրանք չեն ճանաչում իմ քեռուն:



ՎԱԶԳԵՆ ՏԱԼՅԱՆ

# ԱՇՈՒՆ

Վա՜յ, դեղնել են տերևները՝
Թափ են գալիս փողոցում.
Շփոթվել են մարն ու միրը,
Ոչ մայթ գիտեն, ոչ՝ անցում:

Մեկ խշշալով ցրվում են բակ,
Մեկ էլ հանկարծ փախչում դուրս,
Մեկ՝ քչփչում պատերի տակ,
Մեկ պտտվում են առուափոս:

Փոքրիկ Սոնան փողոց եկել,
Նայում է ու զարմանում.
— Այս ի՞նչ պար է, այս ի՞նչ երգ է...
Այս ինչե՞ր եք դուք անում:

Եկեք մեր տուն... Անձրև կգա,
Ձեզ կթրջի՝ ջուր կանի...
— Քամուն կասենք՝ մեզ թև կտա,
Ամպից էլ վեր կտանի:

Բայց չի լսում քամին խենթուկ.
Հա՛ սուլում է, թռչկոտում.
Խաղ է անում ամպի հետ թափ՝
Կաթիլներ է պոկոտում...

Վա՜յ, դեղնել են տերևները՝
Թափ են գալիս, ծիծաղում...
Իսկ զայրացած մութ ամպերը
Բարակ անձրև են մաղում:

Նկ. ԾԱՌՈՒ ԳՐԻԳՈՐՅԱՆԻ

ԵՐՎԱՆԴ ԱԽԱԲԵԿՅԱՆ

# ԳԱՌՆԱՐԱԾ ԱՐԱՆ





Մեր գյուղ սարերում,
Բարձրիկ սարերում
Գառների հոտն է
Փռվել արածում,
Իսկ Արան՝ գլխարթ
Նստել է հպարտ,
Նայում գառներին,
Շվի է ածում:

Նա ամբողջ ամառ
Աշխույժ, համառ,
Հսկել է, պահել
Գառներին խայտառ
Եվ խոսք է տվել,
Որպես լավ հովիվ,
Առանց կորուստի
Հոտը բերել տուն:



Օրեր են եղել՝
Անձրև է մաղել,
Տեղացել կարկուտ
Սարերի վրա,
Բայց գիրկը առած
Գառնուկին սառած՝
Տաքացրել է,
Կյանք տվել նրան:

Իսկ հիմա անքուն
Առուն է երգում.
Անուշ համերգ է
Սարերի լանջին,
Խայտալով կայտառ
Ձագ ուլիկ ու գառ
Ականջ են դնում
«Ոչխարի կանչին»:



# ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԱՅԳԻ

ՀԱՅԿԱԶ ՄՈՒՐԱԴՅԱՆ

Գյուղի արևելյան կողմում տարածված անտառից ծագարաձև իջնում է մի փոքրիկ ձորակ, որ խոխոջում է մի սառնորակ աղբյուր: Քարե երկար գուռ կա դրված աղբյուրի փայտե ծորակի տակ, և դրա համար էլ այն կոչվում է Քարենավի աղբյուր:

Ամառային արձակուրդների ժամանակ գառներ էինք արածացնում ձորի անտառափեշերում: Երբ շոգն ընկնում էր, մենք էլ էինք հավաքվում աղբյուրի մոտ: Ջրանցք էինք փորում, ճյուղավորում աղբյուրի ջուրը, ջրաղաց կառուցում: Պտտվում էին դեղնածաղիկները ջրի պտտաններում, իսկ մենք ոգևորվում էինք, հիանում մեր կառուցումներով:

Աղբյուրի ջուրը իջնում էր ձորնիվար՝ ջրելով ճահճուտներն ու մացառները: Հաճախ թողնում էինք խաղը, ճահճուտներից եղեգ քաղում և գլխարկ գործում:

— Տղե՛րք, ի՞նչ այգի կլինի այստեղ, եթե այս ճահճուտը չորացվի և այս ձորակի լանջերում ծառ տնկվի,— մի օր ասաց Վազգենը:

Անհոգ խաղն ու կատակը վերածվեց լուրջ զրույցի: Մեզ մի պահ ծիծաղելի թվացին մեր կառուցած «ջրանցքներն» ու «ջրաղացները»: Սկսեցինք խոսել մեծի պես, թե ինչպես իրագործենք մեր մտահղացումը:

* * *

Երեկոյան վերադարձա տուն, գառները տեղավորեցի, թուղթ ու մատիտ առա և սկսեցի գծագրել ապագա այգին: Նախագիծս հաջող ստացվեց: Ցանկապատել էի ամբողջ ձորակը: Հինավուրց տանձենին, որ գտնվում էր ձորաշուրթին, առել էի ցանկապատի մեջ: Ձորակի երկու լանջով տարել էի առու, որոնք ճյուղավորվում էին դեպի ճառագայթաձև ձգված ծառափոսերի շարքերը:

Գծագիրը վերջացրի, հետո սպիտակ կավով

տախտակամածի վրա պատրաստեցի այգու մակետը:

— Այդ ի՞նչ ես անում,— հարցրեց հայրս:

— Այգի ենք ուզում գցել Բարեկամի ձորում,— կարմրելով ասացի ես:

— Եվ գծագիր անեմ,— ասաց նա մի այնպիսի լրջությամբ, ասես խոսում էր մի փորձված ինժեների կամ այգեգործի հետ:

Ես ներկայացրի նրան և՛ գծագիրը, և՛ մակետը ու սկսեցի բացատրել, թե որտեղ ինչ է լինելու:

Հայրս հիացավ մեր նախաձեռնությամբ, ապա ավելացրեց.

— Մի բան մոռացել ես:

— Ի՞նչը:

— Ջրավազանը: Այգու մեջ ջուրը բարիք է, այգին՝ բախտական մեծ: Բարակ ջուրը ամառանը չոր տարվա ու՞ տեղ կհասնի. պետք է ամբարել ջուրը, որ վարար բաց թողնենք:

Հայրս էլի դիտողություններ արավ: Ես ընդունեցի բոլորը, նշանակեցի գծագրում ու պառկեցի քնելու:

Ամբողջ գիշեր աչքերիս առաջ այգին էր, նոր ու բարձր ցանկապատով, բոլորված տնկիներով: Մոտիկից, շա՜տ մոտիկից լսում էի առուներով հոսող ջրի կարկաչը:

* * *

Առավոտյան արևը ծագելուն պես, ճամփվեցինք աղբյուրի մոտ: Արամը բավական հետաքրքիր նախագիծ էր կազմել, Արմիկը խնամքով պատրաստել էր այգու մակետը. Վազգենը միայն հաշվարկել էր ծառատնկիների ու տնկիների քանակը: Ամենից հաջող գծագիրը Բագրիկինն էր: Գունավոր մատիտներով նա նկարել էր ծառերը, ցուցադրել երակների նման տարածվող առուները. բայց քննարկման ժամանակ նրան էլ դիտողություն արեցինք: Ջրավազանը նա նույնպես մոռացել էր: Արմիկն իր մակետում նախատեսել էր նաև մի փոքրիկ շինություն, մեր ուսումնափորձնական անկյան համար:

Ամեն մեկից ընտրեցինք մի լավ բան, կազմեցինք ընդհանուր պլան և սկսեցինք աշխատանքը:

* * *

Ուսումնական տարին սկսվեց ավարտականի պես: Առաջին զանգից հետո մտանք դասարան: Սակայն դասերը վերջացան ոչ ավարտականի նման: Դեռ մի քանի րոպե կար վերջին դասից, մեկ էլ երկա՜ր ու ձիգ հնչեց պիոներական շեփորի ձայնը: Ջոկատ առ ջոկատ շարվեցինք դպրոցի ընդարձակ բակում: Բոլորն անհամբեր սպասում էին, թե ինչ է լինելու:

Բակում մի փոքրիկ ամբիոն էր դրված:

Վերջապես, շարքերի առաջ երևաց դպրոցի դիրեկտորը:

Երևի մեկը հենց առաջին օրը խանգարել է դասը. ուզում են դրուժինայի առաջ խայտառակել,— ականջիս փսփսաց Արմոն:

— Ո՞ւմ...



Նկ. ՀՐԱՅՐ ԿԱՐԱՊԵՏՅԱՆԻ

Ու քարացան շարքերը կանգնած տեղում:

— Ձայնը տալիս ենք ընկեր Բաղդասար Մատուրյանին,— ասաց դիրեկտորը,— լսեցեք նրան:

— Ընկերնե՛ր, դրուժինայի մի խումբ տղաներ այս ամառ, արձակուրդների ժամանակ, հանդես

*են եկել մի հիանալի նախաձեռնությամբ. Նրանք որոշել են Բաբկենալի ձորակը դարձնել այգի: Ցանկապատի ցցերն ու ջախը պատրաստ է ան-տառում, պետք է տեղափոխել, պետք է ցանկա-պատել ձորակը, պետք է չորացնել ձորակի ճահ-ճուտը, պետք է մտածել տնկիների մասին, պետք է...*

*Տարիներ են անցել, բայց մինչև հիմա ական-ջիս հնչում է պիոներական շեփորի ձայնը, և աչ-քերիս առաջ պատկերանում են մեր դրուժինայի ամրակուռ շարքերը:*

*Ամբողջ դպրոցը այդ օրը ոտքի կանգնեց. մենք դուրս եկանք գյուղամիջյան ճանապարհով. գնում էինք կանոնավոր շարքերով. հետո ցրվեցինք ան-տառի արահետներում ու կածաններում:*

*Ծառերի տակ դարսված էին ցանկապատի ցցե-րը, իսկ ջախի կծիկները նմանվում էին խոտի հսկա դեզերի: Անտառը վերածվեց հսկա մրջնա-նոցի: Կրում էինք այդքան ցանկապատի շինանյու-թը: Երեք շաբաթ անց՝ ցանկապատն արդեն պատ-րաստ էր: Հետո ձորակը մաքրեցինք քարից ու մացառներից, չորացրինք ճահճուտը, կառուցեցինք մի հսկա ջրավազան, իսկ աշնանը սկսեցինք ծա-ռատունկը: Անտառից վայրի տանձենիներ ու խնձորենիներ բերեցինք, որ գարնանը պատվաս-տենք:*

*Աշնանը դրեցինք նաև մեր բուսաբանական կա-բինետի հիմքը, որ մինչև գարուն ավարտենք:*

*Ինչպիսի՜ խանդավառություն: Ինչեր ասես, որ չի անի պատանեկան երևակայությունը:*

*Գարնանը անտառի կողքին կանաչեց նաև մեր նորատունկ այգին:*

*Գյուղացիները, որպես մեր աշխատանքի վար-ձի գնահատական, այգին անվանեցին պիոներա-կան, իսկ մենք՝ դպրոցամերձ:*

*Այսօրվա պես հիշում եմ այն գարունը, երբ պիոներական հանդիսավորությամբ կատարեցինք մեր դպրոցամերձ այգու բացումը: Շեփորի ձայնը հնչում էր խրոխտ ու հաղթական:*

*Մենք գյուղում գցեցինք առաջին հանրային այգին, որն այսօր տարածվել է ամբողջ հեկտար-ներով, մենք տնկեցինք առաջին հանրային ծա-ռերը, որոնք աճել և վաղուց դարձել են բերքա-տու ծառեր:*

*Իսկ ո՞ւր գնացին այդ առաջին տերերը: Նրանք էլ աճեցին իրենց մատաղ տնկիների նման, դարձան մեծ մարդիկ:*

*Արմեն դպրոցն ավարտելուց հետո աշխատան-քի անցավ գյուղում: Այժմ նա կոլտնտեսության դաշտավարական բրիգադի բրիգադիրն է, Վազգենն զբաղվում է այգեգործությամբ, Արփիկը դպրոցի ուսուցիչն է, շատերն էլ դարձան ինժեներներ, տեխնիկներ, գյուղատնտեսներ:*

*Հայրենական պատերազմի ժամանակ Բագրիկն ու Արամն էլ մեկնեցին ռազմաճակատ և... չվե-րադարձան: Նրանք ընկան կռվի դաշտում, որ ի-րենց գցած այգին ծաղկի ամեն գարնան ու գար-նանային զվարթությամբ ժպտա սերունդներին, որպես գյուղի առաջին պիոներների անթառամ հուշարձան:*




Գալիս են բարեկամները: Կառամատույցում դիմավորելու են եկել պիոներները: Նրանց ձեռքին ծաղիկներ կան, գողտրիկ ծաղիկներ: Այդ ջերմ ու սրտառուչ բարեկամության մասին է պատմում «Բարեկամների աչքերով» կինոնկարը, որ նկարա-հանել է Երևանի պիոներների պալատի կինոսի-րողների խմբակը: Սցենարը գրել են Արաքսիան, Ստյոպան, Ջուլիետան, իսկ դերերը կատարում են Երևանի Բելինսկու անվան դպրոցի աշա-կերտները: Պիոներները հյուրերին ծանոթաց-նում են մայրաքաղաքի տեսարժան վայրերին: Եվ հանդիսատեսն էլ նրանց հետ շրջում է լայնահուն պողոտաներով, հիանում Լենինի անվան հրապա-րակի ճարտարապետական անսամբլով, կարծես զգում երկնքի կապույտի մեջ մխրճված ցայտաղ-բյուրի ցնցուղվող կաթիլների սառնությունը: Ի՞նչ է եղել Լենինի հրապարակը նախկինում: Ահա մա-կետը. փոշոտ մի փողոց, որի երկու կողքին թառել են հողաշեն, ցածրիկ տներ:

Սա Մատենադարանի շենքն է: Սա էլ՝ կենդա-նաբանական այգին իր փարթամ ծառուղիներով:

Այսպես, կադր կադրի հետևից հառնում է վար-դագույն Երևանը իր սոցիալիստական առօրյայով, ճարտարապետական կոթողներով:

Վաղուց վերջացել են նկարահանման աշխա-տանքները: Այժմ երեխաները մոնտաժում, վերա-մշակում են կադրերը:

— Նայի՛ր, Անահիտ, ինչքա՞ն հաջող է ստաց-վել ձնհալի տեսարանը,— ձեռքին բռնած ժապա-վենը լույսին է մոտեցնում Կարենը.— հիշո՞ւմ ես, նկարեցինք Գառնիում: Ինչպե՛ս չհիշել: Մեքե-



*Կինոօպերատորներ՝ Կոստյա Դավթյանը և Էդիկ Մանասարյանը նկարահանման պահին:*

Լրագրողի լուսանկար՝ ՎԱՐԱԶԴԱՏ ՍԵՎՈՅԱՆԻ

տեղ-տեղ սպիտակին էր տալիս ձյունը: Իսկ քարի տակից ձնծաղիկը գլուխը դուրս հանել ու զարմացած նայում էր արևին: «Ինչ շո՜ւտ է եկել արևը»—մտածում էր ձնծաղիկը: Արևն էլ վերևից ծիծաղում էր նրա վրա. «Ա՜յ թե քնկոտ ես, փոքրիկ ձնծաղիկ»:

— Ձորը նկարենք վերևից,— ասաց ռեժիսորը՝ Էդիկը:

Երեխաները նկարեցին ձորը, ձյունաթաթախ ձնծաղիկը, ժպտացող արևը:

— Այս էլ Կիրովի անվան դպրոցի արհեստանոցն է,— վերհիշում է Անահիտը:

Կանցնեն օրեր, և երեխաների նկարահանած կինոնկարը կբարձրանա էկրան: Խմբակի անդամները այն նվիրել են Կոմունիստական պարտիայի 22-րդ համագումարին:

նան թեքվեց ասֆալտապատ ճանապարհով ու պարանին չհասած՝ կանգ առավ: Արահետով երեխաները իջան ցած: Նրանց առջև ձորն էր, որի վրա

*ԷԴՄՈՆԴ ԳԵՎՈՐԳՅԱՆ*

# ԻՆՉՈՒ՞ ՊԱՏԺԵՑ ՄԱՅՐԻԿԸ

*ՇԱՀԵՆ ԹԱԹԻԿՅԱՆ*

*Նկ. ԿԱՐԵՆ ՍՄԲԱՏՅԱՆԻ*

*Վահրամն առավոտյան զարթնեց թե չէ, անմիջապես զգաց, որ ինչ-որ լավ, շատ լավ բան է սպասում իրեն: Տրամադրությունը շատ լավ էր: Զարթնեց թե չէ, ուզում էր երգել, կամ մի ուրիշ բան անել. ասենք՝ անկողնի մեջ գլուխկոնծի տալ:*

*Նա արդեն պատրաստվեց այդ անել, բայց նախ սկսեց մտածել, թե ախր ինչի՞ց է ինքն այդպես ուրախ:*

*Հայրիկը մի անգամ ասել է, որ կյանքում առանց պատճառի ոչինչ չի լինում: Ահա՛, դե, իհարկե, հայրիկը ճիշտ է ասել: Հո առանց պատճառի չի՞ Վահրամի տրամադրությունն այդքան բարձր:*

*Երեք օր է տանը խոսում են այդ մասին, պատրաստվում են...*

*Մայրիկը խոստացել էր կիրակի օրը իրեն ու Սեդային տանել Երևան, տատիկենց մոտ հյուր: Դա մի այնպիսի ուրախություն էր, մի այնպիսի արտակարգ դեպք, որ այնքան էլ հաճախ չէր պատահում: Վահրամը մինչև անգամ կասկածեց. չլինի՞ թե ինքը սխալվել է, և կիրակին դեռ չի եկել: Նա վախեցած նայեց օրացույցին, որը ճիշտ դիմացի պատին էր փակցված: Դրանից հետո նոր միայն մի պինդ «ուռա՜» գոռաց և այնպես գլուխկոնծի տվեց, որ քիչ էր մնում մահճակալից գլորվեր ցած:*

*— Զարթնեցի՞ր,— անմիջապես կից սենյակից նրա ձայնի վրա վազեց քույրը՝ Սեդան:*

*— Այսօր կիրակի է,— հայտարարեց Վահրամը:*

*— Ես քեզանից շուտ գիտեմ: Ես հայրիկից էլ շուտ գիտեմ, որովհետև բոլորից վաղ եմ արթնացել,— ձայն տվեց ու քրքջաց Սեդան:— Դու և հայրիկը ծույլեր եք, իսկ ես ու մայրիկը, օ՜... էնքան շուտ ենք վեր կացե՜լ:*

*Երևում էր, որ Սեդան վաղ է արթնացել: Նա արդեն լվացվել էր, մազերը սանրել ու ժապավենով կապել:*

*Վահրամը համարյա նախանձով նայեց նրան*

էլ չէր կարելի ժամանակ կորցնել: Եթե ուրիշ օր լիներ, կծուլանար վեր կենալ, բայց այսօր...

Նա այնպես արագ հագնվեց, որ մայրիկը մինչև անգամ զարմացավ:

— Մենք պետք է ամեն օր գնանք տատիկենց տուն, որ դուք այդպես արագաշարժ դառնաք, — ծիծաղելով ասաց նա:

— Սրանից հետո ես միշտ այսպես արագաշարժ կլինեմ, — խոստացավ Վահրամը:

Երբ մարդ ուրախ տրամադրություն է ունենում, ապա շատ հեշտությամբ է խոստումներ տալիս:

Հիմա ի՞նչ ասես, որ չէր խոստանա նա:

— Տեսնենք, — կասկածանքով ժպտաց մայրիկը:

— Մայրիկ, իսկ ավտոբուսո՞վ կգնանք, — հետաքրքրվեց Վահրամը, չնայած հաստատ գիտեր, որ ավտոբուսով են գնալու:

— Չէ՛, — ասաց մայրիկը, — երեսուն կիլոմետրն ի՞նչ է որ, ոտքով կգնանք...

— Դե լավ, մայրիկ, կատակ մի անի...

— Գի՛ժ, իհարկե, կատակ է անում, — ծիծաղեց Սեդան:

— Մայրիկ, իսկ հայրիկը կգա՞:

— Եթե խելոք լինեք, կգամ, — խոստացավ հայրիկը, որ սուրճ խմելով թերթ էր կարդում:

— Իսկ հեռուստացույց կնայե՞նք:

— Իհարկե, կնայենք, գիժ, — նորից ծիծաղեց Սեդան:

Ախր, Սեդան վաղ էր արթնացել ու ամեն ինչի մասին հասցրել էր հարցնել մայրիկին ու հիմա նա իրեն լավատեղյակ էր համարում:

Բայց Վահրամը շարունակում էր միմյանց հետևից հարցեր տալ:

— Է՜, Վահրամ, — վերջապես դժգոհեց մայրիկը, — դու քո հարցերով ինձ խանգարում ես: Իսկ ես շտապում եմ:

Եվ իսկապես, մայրիկը արագ-արագ ինչ-որ շոր էր հարթուկում:

— Եկ սեղան պատրաստենք ու օգնենք հայրիկին, — առաջարկեց Սեդան:

— Օգնենք, — համաձայնվեց Վահրամը:

Նրանք սկսեցին թեյի պարագաները դասավորել սեղանին:

Ու մեկ էլ շաքարամանը ընկավ Վահրամի ձեռքից, կոտրվեց:

Ա՜խ, այդ շաքարամանը... Հենց կիրակի օ՞րը, այն էլ այսպիսի մի կիրակի՞ պետք է կոտրվեր...

— Դո՛ւ կոտրեցիր, — անմիջապես վախեցած ասաց Վահրամը քրոջը:

— Ե՞ս, — զարմացավ Սեդան:

— Դո՛ւ, — պնդեց Վահրամը:

— Ի՞նչ պատահեց, — աղմուկը լսելով, հարցրեց մայրիկը:

— Սեդան շաքարամանը կոտրեց, — հայտարարեց Վահրամը:

— Վահրամը կոտրեց, — բացականչած ասաց Սեդան:

Մայրիկը զարմացավ: Ինչպե՞ս կարող է պատահել, որ մարդ չիմանա իր ձեռքի՞ց է ընկել շաքարամանը, թե՞ ոչ:

Մայրիկը շատ էր շտապում, և եթե զարմացած չլիներ, գուցե հարթուկելիս կասեր, որ շաքարամանը սիրուն էր, մանավանդ, որ հայրիկն էլ շատ էր սիրում այդ շաքարամանը: Բայց մայրիկը շատ էր զարմացել:

— Ո՞վ կոտրեց, — մոտենալով նորից հարցրեց նա:

— Սեդան, — ասաց Վահրամը:

— Խաբում է, — բղավեց Սեդան:

— Խաբու՞մ է, — հարցրեց նորից մայրիկը: — Վահրամ, դու՞ ես խաբում, թե՞ Սեդա, դու: Ա՜խ, ես ինչքան դժբախտ եմ. ձեզանից մեկը, դեռ



չգիտեմ ով, կարողանում է սուտ խոսել:

— Ես այդպես էլ գիտեի, — հայտարարեց հայրիկը: — Արդեն զարմանում էի, թե այս երեք օրը ինչպե՞ս կարողացան խելոք մնալ: Ըհը՛, վերջին օրը ամեն ինչ փչացրեցին: Նշանակում է, ես չեմ գա ձեզ հետ...

— Ո՛չ,— ասաց մայրիկը, չի գա նա, ով սուտ է ասում։

— Ես սուտ չեմ ասում,— արդեն համարյա թե լաց լինելով ասաց Սեդան։

— Ես էլ սուտ չեմ ասում,— նորից ու նորից պնդեց Վահրամը։

Մայրիկը շվարել էր։ Իսկ հայրիկը...

Նա վեր կացավ, լրագիրը դրեց սեղանին, ապա ասաց.

— Ուրեմն՝ այդպե՞ս որոշեցիր, ով որ սուտ է խոսում, նա՞ չպետք է գա։

— Իհարկե,— հաստատեց մայրիկը։— Բա ինչո՞ւ մի սուտասանի պատճառով դու տուժես։

— Դե լավ,— ասաց հայրիկը,— այդ դեպքում էլ ժամանակ չկորցնենք։ Երեխաներ, նստեք, թեյ խմենք։ Գոհար,— դիմեց նա մայրիկին,— մինչև թեյի վերջը երևի ով որ սուտ է ասում, կզղջա ու կասի այդ մասին։

Թեյեցին լուռ։

Տատիկենց մոտ գնալը լրջորեն վտանգված էր։ Վահրամը միայն մի մխիթարանք ուներ։ Հայրիկը ինչպե՞ս կիմանար, թե ո՞վ է ջարդել շաքարամանը։ Նա հո ծոծրակին աչքեր չունե՞ր։ Բացի այդ... Նույնիսկ եթե որևէ կերպ իմանար, ապա դժվար թե իրեն մենակ թողնեին տանը ու գնային այդքան հեռու տեղ, որ պետք է մնային ամբողջ օրը։

Բայց և այնպես, նա շատ էր վախենում։

Երբ թեյեցին, վերջացրին, հայրիկը հարցրեց.

— Դե, երեխաներ, ո՞վ է ջարդել շաքարամանը...

— Սեդան,— խեղդվող ձայնով բերեց Վահրամը...

— Սուտ է ասում,— նորից լացակումեց Սեդան։

Հայրիկը շատ տխրեց։ Մի քանի մտածեց, ապա ձեռքերի տակից նայելով Վահրամին, ասաց.

— Սեդա, վերարկուդ հագիր։

Վահրամը սկսեց արագ-արագ աչքերը թարթել, ու արտասուքը կախվեց նրա թերթերուներից։ Նշանակում է իրեն չեն ուզում տանել։

Հայրիկը ավելի խոժոռ նայեց Վահրամին։ Վահրամը հայրիկի այդ խոժոռ, շատ խոժոռ հայացքից չի վախենում։ Նա գիտե, թե ինչքան բարի է հայրիկը։

Հայրիկը բոլորովին չէր սիրում, երբ Վահրամը կամ Սեդան լաց էին լինում։

— Դե լավ, լացդ կտրի,— խիստ ասաց նա Վահրամին։— Ես հաստատ գիտեմ, որ դու ես կոտրել, որովհետև այդ միջոցին հատակի վրա տեսա ձեր ստվերները, բայց այս անգամ, քանի որ այդքան հեռու տեղ ենք գնում... Տուն կգանք, ես քեզ մի ուրիշ պատիժ կտամ, ես չեմ թողնի, որ դու այդ սուտը մարսես։ Ինձ համար ոչ թե շաքարամանն է կարևոր, այլ այն, որ դու կարողանում ես սուտ ասել։ Սուտը ամենավատ բանն է։ Դե, վերարկուդ հագիր։



Բայց մայրիկը բարկացավ։

— Ո՛չ մի վերարկու, նա ոչ մի տեղ չի գա։

Հետո հայրիկն ու մայրիկը երկար խոսում էին անգլերեն։ Նրանք անգլերեն լեզուն են ուսումնասիրում միասին, որ կարողանան ինչ ուզենան՝ ազատ խոսեն երեխաների մոտ։

Ի վերջո, հայրիկը բոլորովին մռայլ ու փոխված ձայնով, հայերեն ասաց.

— Էհ, ի՞նչ կարող ես անել։ Դե, Վահրամ, մենք քեզ կթողնենք մորաքույր Վարսիկի տանը։

* * *

Ահա արդեն քանի ժամ է Վահրամը մորաքույր Վարսիկի տանն է։ Այդ տունը Վահրամի համար աշխարհում ամենաձանձրալի ու անհրապույր տեղն է։ Մորաքույր Վարսիկը երեխա չունի, բոլորովին մենակ է ապրում և այդ պատճառով էլ չգիտե, որ ութ տարեկան երեխան եթե վազի, ապա դրանում ոչ մի վտանգավոր բան չկա։ Նա այն-

քան քույրն է արգելում, որ նրա մոտ կարելի էր միայն անշարժ նստել ու շատ զգույշ շնչել: Բայց այդ էլ չի օգնում: Այդ դեպքում էլ նա ինչ-որ այնպես, համենայնդեպս, երբեմն-երբեմն նկատողություն է անում:

— Խելոք մնա:

Վահրամը այսօր խելք անկարգություն անելու սիրտ էլ չունի: Նա այնքան է լաց եղել, որ մինչև անգամ հոգնել է: Նա տխուր ու տրտում նստած նայում է, թե ինչպես մորաքույր Վարսիկը թաշկինակ է ասեղնագործում ու մտածում է, թե ինչքան անխիղճ է մայրիկը...

* * *

Վահրամը չիմացավ, թե երբ իրեն հայրիկը վերցրեց ու տարավ տուն, պառկեցրեց մահճակալին:

— Բան կերե՞լ է, — հարցրեց մայրը մորաքույր Վարսիկին:

— Չէր ուտում, — ասաց Վարսիկը, — բայց հետո մի կերպ ստիպեցի:

Վահրամը ոչինչ չիմացավ: Նա քնած էր: Երազում տեսնում էր, թե ինքը տատիկենց տանն է: Հեռուստացույց են նայում: Թատրոն են գնում ու էլի զարմանալի լավ տեղեր են գնում: Վահրամը շատ ուրախ երազ էր տեսնում:

Իսկ մայրիկը...

Մայրիկը անքուն նստած էր Վահրամի մոտ:

Մայրիկի քունը չէր տանում: Նա անընդհատ ծածկում էր անհանգիստ քնած որդու վերմակը ու մտածում այն մասին, թե ինչպիսի՜ն կլինի Վահրամը, երբ մեծանա: Մտածում էր, ու նրան թվում էր, թե տեսնում է մեծացած, հասակ առած Վահրամին: Նրան ամենքը սիրում են, հարգում, նա ազնիվ է, քաջ, երբեք սուտ չի խոսում, երբեք ոչինչ անազնիվ բան չի կատարում...

Մայրիկը չի քնում: Նա չի էլ պառկում: Ամբողջ օրը փչացել էր:

Տատիկենց տանը նա շարունակ տխուր էր: Հայրիկը քանի՞ անգամ բարկացավ:

— Դե, վե՛րջ տուր: Ես գիտեի, որ այդպես է լինելու, դրա համար էլ պնդում էի, որ բերենք նրան...

Մայրիկը չի քնում: Դեռ վերջերս էլ նա մոտ մի շաբաթ համարյա չքնեց գիշերները: Վահրամը այն ժամանակ հիվանդ էր և շարունակ տաքության մեջ բացվում էր: Մայրիկը այդպիսի շա՜տ-շա՜տ գիշերներ է արթուն մնացել:

Մայրիկը հոգնած է, անքուն, բայց ահա նա ժպտաց...

Ինչու՞ ժպտաց մայրիկը...

Լույսն արդեն բացվում էր: Լսվում էին հայրիկի, Սեդայի ու Վահրամի շնչառության հանգիստ ձայները: Մայրիկի հոգնած կոպերը իրենք-իրենց փակվում էին, ու նրա աչքին հանկարծ երևաց Վահրամը:

Արդեն մեծ մարդ էր դարձել Վահրամը: Նրան ամենքը սիրում էին, հիանում նրա ազնվությամբ, քաջությամբ: Մայրիկը նայում էր նրան ու ժպտում...

# ՀԱՐՈՒԹԻ ՊԱՊԻԿԸ

ՍՈՒՐԵՆ ՄՈՒՐԱԴՅԱՆ

Պապիկի գործին
Երբեք վերջ չկա.
Թերթեր է կարդում,
Գնում է շուկա.
Ամեն առավոտ
Ճիշտ ժամը ութին,
Դպրոց է տանում
Փոքրիկ Հարութին:
Մոտիկ խանութից
Բերում է հաց, կաթ,
Այգին է ջրում,
Որ բերք տա առատ:
— Պապիկ ջան, ի՞նչ ես
Գործ անում անվերջ:—
Թոռնիկը նրան
Մեղմ հանդիմանեց:

Արդեն ծեր ես դու,
Քիչ հանգստացիր,
Ես քո փոխարեն
Կգնամ հացի:
Կգնամ խանութ,
Կաթ էլ կբերեմ,
Քո փոխարեն մեր
Այգին կջրեմ:—
Ժպտաց բեղի տակ
Պապը Հարութի.
— Չեմ կարող պարապ
Մնալ, ա՛յ որդի:
Իմացի՛ր, բալաս,
Երբ գործ եմ անում,
Հանգստանում եմ
Ու ջահելանում:



Նկ. ՌՈԲԵՐՏ ՄՈՒԹԱՖՅԱՆԻ

# Նամակը



ՍՏԵԼԼԱ ՏՐՈՖԻՄՈՎԱ

Նկ. ՌՈՒԲԵՆ ՄԱՆԱՍՅԱՆԻ

Ճաշից հետո Կոստյան և Գրիշան գնացին իրենց սիրած բացատը: Արևի տակ աչքները կկոցելով, նրանք նայում էին երկնքին, որ մերթ հայտնվելով, մերթ անհետանալով լողում էին թեթև, սպիտակ ամպերը: Շատ հաճելի էր դիտել, թե ինչպես են նրանք փոխում իրենց ուրվագծերը, հիշեցնելով մերթ ձյունապատ սարեր, մերթ առագաստանավեր, մերթ հսկայի մորուքավոր գլուխ: Գրիշային, որը չուներ այնպիսի վառ երևակայություն, ինչպես Կոստյան, հազվադեպ էր հաջողվում նրկատել երկնքում սահող ամպերի տարօրինակ ձևերը: Բայց, չնայած դրան, նա աչքերը սևեռած նայում էր ամպերին, թեթևակի տարակուսելով, թե որ կողմից Կոստյան տեսավ հսկայի մորուքը և որտեղ նկատեց նրա թավամազ ունքերը...

— Տե՛ս, տե՛ս, ա՛յ...ո՜նց են կիտվել,—հուզված բացականչեց Կոստյան:

— Ինչո՞ւ են կիտվել,—զարմացավ Գրիշան,—մռայլվել է:..

— Այսինքն, ո՞նց թե մռայլվել է, ի՞նչ ես փչում: Կիտվել են:

— Մռայլվել է...

— Ո՞վ:

— Հսկան...

— Հսկայի գլուխը վաղուց չկա: Սա արդեն առագաստանավ է: Տե՛ս, ինչպես են փքվել առագաստները: Հիմա կտանեն ղեկի բաց ծովը... Մի՞թե չես տեսնում:

Ճիշտն ասած, Գրիշան չէր տեսնում ոչ հսկայի գլուխը, ոչ էլ առագաստանավակը, բայց այդ մասին խոստովանել չէր ուզում:

— Հիմա տեսնում եմ... Ես, երևի, այն կողմը չէի նայում: Իսկ դա ի՞նչ է... Ասես թնդանոթ է առագաստների հետևում: Փողն էլ է երևում...

Բայց Կոստյան արդեն ձանձրացավ ամպերին նայելուց և արհամարհանքով ասաց.

— Թնդանոթ... Մի՞թե նավակների վրա թընդանոթ է լինում: Բա՜ն ասաց...

— Բայց, դե այդպես է...—արդարացավ Գրիշան:— Ամպերի մեջ ինչ ասես կարող է լինել...— Եվ քանի որ ուրիշ չէր կարողանում, բարեհոգությամբ ավելացրեց.

— Ով գիտի... Ամպը ամպ է... Ես ոչինչ էլ չեմ տեսնում: Իսկ քո երևակայությունը, Կոստյա, հարուստ է: Միգուցե երբևէ գրող կդառնաս

— Ես հիմա էլ եմ գրում:

— Գը-րո՞ւմ ես... Ի՞նչ ես գրում:

Կոստյան լռեց, հետո վճռականորեն ասաց.



— Առայժմ չէի ուզում ասել: Դե լավ, միայն քեզ կասեմ, որպես ընկերոջ: Հիշո՞ւմ ես, ես պատմվածք էի գրել... երկար... քսան էջանոց:

— Ինչպիսի՞ էջեր:

— Ինչպիսի՞: Տետրակի:

— Դե լավ:

— Չե՛ս հավատում: Իսկ գիտե՞ս, թե որքան արկածներ կան այնտեղ... Սարսափելի բան է...

Գրիշան նույնիսկ մի փոքր ետ քաշվեց ընկերոջից և նրա վրա նայեց այնպիսի հարգանքով, որ Կոստյայի սիրտը հպարտությամբ լցվեց:

— Հենց դո՞ւ ես գրել:

— Չէ, Գոգոլին խնդրեցի,—ծիծաղեց Կոստյան,—հիմա՜ր:

— Բայց չէ՞ որ դրա վրա հարկավոր է մտածել,—Գրիշան այնպես էր զարմացել, որ ուշադրություն չդարձրեց Կոստյայի նկատողության վրա:—Իսկ պատմվածքը ինչի՞ մասին է:

— Մոտ օրերս ամսագրում կկարդաս,—անփու-

թերևս ասաց Կոստյան, չնայած նախընտրում էր պատմելու ցանկությունից: Ես դեռ անցյալ ամսին եմ խմբագրություն ուղարկել:

— Խմ-բա-գրությո՞ւն,— Գրիշան զմայլված նայեց Կոստյային, որն ամբողջ ուժով ցանկանում էր պահել դեմքի անտարբեր արտահայտությունը:— Ա՛յ դա գործ է: Իսկական գրողի նման...

— Իսկական գրող էլ կլինեմ,— ասաց Կոստյան:— Ես դա արդեն վաղուց եմ որոշել: Երկու ամիս առաջ: Հենց որ պատմվածքս տպեն, նորը կուղարկեմ: Արդեն գրեթե մտածել եմ:

— Իսկ եթե... չտպե՞ն: Դու, Կոստյա, մի նեղացիր, բայց չէ՞ որ դու ռուսերենից երկու հատ «երկուս» ունեիր:

— Ի՞նչ գործ ունեն այստեղ երկուսները,— զայրացավ Կոստյան:— Կարևո՛ր է, որ պատմվածքը հետաքրքիր լինի: Իսկ սխալները... այնտեղ, խմբագրությունում կուղղեն:

— Հա-ա՞...— Գրիշան լռեց:— Գիտե՞ս ինչ, Կոստյա... երբ դասերը սկսվեն, տղաներին պետք է ասել, որ դու պատմվածք ես ուղարկել ամսագրին: Չէ՞ որ նրանք չգիտեն, թե ինչու ես դու սկսել վատ սովորել: Դե, ես հասկանում եմ, թե ինչու, դա հասկանալի է. ժամանակ չես ունենում դասերը պատրաստելու, քանի որ պատմվածքներ ես գրում:

— Ինչու՞ ասել: Ամսագիրը կբերեմ, ցույց կտամ տղաներին: Իսկ ամենից առաջ դասատուներին: Դրանից հետո նրանք անհարմար կզգան ու ինձ վատ գնահատական չեն դնի:

Չնայած Գրիշան կասկածում էր այդ մասին, բայց այն միտքը, որ նրա ամենալավ ընկերը համարյա գրող է դարձել, այնքան հաճելի էր, որ նա զարմացած գլխով արեց:

— Իսկ ինչպե՞ս է կոչվում պատմվածքդ:

— «Հանդիպում ճապոնական ծովում»:

— Կոստյա,— քիչ հեռվից լսվեց մի բարակ, մանկական ձայն:— Կոստյա, նամակ ունես:

Բարեկամները իրար նայեցին և, առանց խոսելու, վեր թռան:

— Ո՞ւր է նամակը, որտեղի՞ց է:

— Չգիտեմ: Մայրիկը պատվիրել է քեզ տալ: Վերցրու, ես ժամանակ չունեմ, մենք խաղում ենք:

— Խմբագրությունից է,— չգիտես ինչու, շշուկով ասաց Գրիշան, ծրարի վրա կարդալով հետադարձ հասցեն:— Դու մի տե՛ս:

Կոստյան անհամբերությամբ բացեց ծրարը և աչքերով խորասուզվեց մեքենագրված հավասար տողերի մեջ:

Ընկերոջից ոչ պակաս հուզված Գրիշան, նայելով նամակին, բարձրացավ ոտքի թաթերի վրա:

«Գրող դառնալը,— կարդաց նա,— այնքան է դժվար, որքան ինժեներ կամ օդաչու դառնալը: Դրա համար հարկավոր է շատ լավ սովորել: Իսկ դու, ինչպես երևում է, այնքան էլ շատ ժամանակ և աշխատանք չես տրամադրում պարապելու համար: Սկսենք նրանից, որ քո պատմվածքում տասնչորս կետադրական և շարահյուսական սխալ կա: Շատ բառեր օգտագործում ես ոչ այն իմաստով և նշանակությամբ, ինչպիսին ունեն: Իսկ գրողը չէ՞ որ պետք է սիրի և գիտենա իր լեզուն: Նա պետք է գիտենա նաև ուրիշ առարկաներ, որպեսզի չշփոթի, ինչպես դու ես շփոթել պատմական տարեթվերը և աշխարհագրական հասկացությունները: Ի միջի այլոց, Կամչատկայի ափերը ողողում է ոչ թե ճապոնական, այլ Օխոտյան ծովը: Հետաքրքիր է, ինչ գնահատականներ ունես դու աշխարհագրությունից: Ինչ վերաբերվում է գիբբոնին, ապա դա ոչ թե ձուկ է, այլ կապիկ: Ամենայն հավանականությամբ, դա քեզ հայտնի կլիներ, եթե դու ուշադիր սովորած լինեիր կենդանաբանություն: Գուցե դու նկատի ես ունեցել ոչ թե գիբբոնը, այլ պիթո՞նը: Ծովում չէր կարող «սուզվել» նաև կոկորդիլոսը, որովհետև այդ շրջաններում կոկորդիլոսներ չեն հանդիպում...»

Ընդհատելով նամակի ընթերցումը, Կոստյան այն ծալեց և կոխեց գրպանը:

— Կոկորդիլոսների մասին նրանք, համենայնդեպս, ճիշտ չեն,— ասաց նա, ջանալով չնայել ընկերոջ վրա: Կոկորդիլոսը շատ լավ կարող էր լողալ հասնել մինչև ճապոն... Օխոտյան ծովը:

— Հասարակ բան է,— միջամտեց Գրիշան:— Խորասուզվեց նեղուցում, ջրի երես դուրս եկավ Օխոտյան ծովում: Դատարկ բաներ են: Է՜խ, դո՛ւ, գրող: Այդպիսի պարզ բաները չգիտես:

Չգիտեմ, բայց կիմանամ: Կսովորեմ,— զայրացած ասաց Կոստյան:— Եվ պատմվածքներ էլ կգրեմ: Նա համառորեն գլուխը ցնցեց, գրպանից հանեց նամակը և այն թափահարեց Գրիշայի քթի առաջ:— Իսկ այսպիսի նամակներ էլ այլևս չեմ ստանա, ամբողջ կյանքումս չեմ ստանա: Համոզված եմ: Ահա և վերջ:

— Ի՞նչ ես փնթփնթում,— զարմացավ Գրիշան:

— Քեզ չեմ ասում,— անմիջաբար ասաց Կոստյան և հանկարծ ծիծաղեց:— Ես ինձ եմ ասում:





Մրցանակաբաշխության
նյութերից

# ԻՄ

Թանկ են երկրիս օդը, ջուրը
Եվ արևի կիզումն ամռան։
Հայրենիքն է սրտիս հուրը,
Երազներիս լուսե ճամփան։

Փոթորկահույզ ծովեր ունի
Երկիրը իմ մեծ ու հզոր,
Անծայրածիր դաշտեր ունի,
Լեռներ, ձորեր անդնդախոր։

Նրա թուփը, խոտը կանաչ,
Մի բուռ խոպան հողը անգամ,
Սիրում եմ ես, սիրում սրտանց,
Նրա համար կյանքս կտամ։

# ՊԱՊՆ ու ԹՈՌԸ

Ձմեռը որոշեց առաջինը աշխարհ ուղարկել իր Թոռնիկին՝ չարաճճի Ձյունիկին։

— Լա՜վ, թող գնա աշխարհ տեսնի, ես արդեն ծեր եմ, — մտածում էր նա։

Պապիկը նրան տվեց իր գորգը և բարի ճամփա մաղթեց։

Չարաճճի Ձյունիկը վերցրեց գորգը և Թռավ-հասավ աշխարհ։ Չնայած գորգը շատ ծանր էր, բայց նա չէր տնքում։ Ուրախ էր, որ պապիկը վստահել է իրեն։ Եվ, վերջապես, կանգ առավ մի բարձր սարի վրա ու գորգը թափ տվեց։ Նա հպարտ-հպարտ նայում էր, թե ինչպես ձյան փաթիլները դանդաղորեն իջնում և ծածկում են աշխարհը։ Եվ հանկարծ... ամպերի տակից դուրս եկավ արեգակը, որպեսզի տեսնի, թե մարդիկ առանց իրեն չե՞ն տխրում։ Ձմեռը հրամայել էր ամպերին, որ նրանք հսկեն արեգակին և ոչ մի դեպքում բաց չթողնեն, բայց արեգակը հալեցրել էր նրանց քար սիրտը և դուրս եկել ամ-



Նկ. ԴԱՆԻԵԼ ՍԱՐԳՍՅԱՆԻ



# ԵՐԿԻՐԸ

Ու թե փորձի ոսոխն անարգ
Ոտքը դնել մեր մայր հողին,
Ժողովուրդն իմ՝ մեծ ու անպարտ,
Կելնի ցասմամբ ահեղ ծովի...

Թանկ են երկրիս օդը, ջուրը,
Եվ արևի կիզումն ամռան,
Հայրենիքն է սրտիս հուրը,
Երազներիս լուսե ճամփան։

ԴԱՎԻԹ ԷՅՎԱԶՅԱՆ

(Ղափան, № 1 միջն. դպրոց,
ութերորդ դասարանի աշակերտ)



պերի տակից։ Երբ արեգակը դուրս եկավ, այնպես քաղցր ժպտաց, որ ձյունը հալվեց։ Ձյունիկը վախեցավ.

— Ա՜խ, ես ի՞նչ պատասխան պիտի տամ պապիկին։

Եվ նա սկսեց սարսափահար փախչել։ Իսկ ձյունե առվակները հոսում էին, անվերջ հոսում։ Արեգակը Ձյունիկին էլ հալեցրեց և գցեց առվակի մեջ։

Իմացավ այդ մասին Ձմեռ պապին և եկավ զայրացած, ծանր ու մեծ։ Իր գավազանով ամեն ինչ սառույց դարձրեց, ինչքան ուժ ուներ, փչեց, ձյունե գորգը թափ տվեց։ Աշխարհը, որ հենց նոր էր ազատվել սառցի ճիրաններից, նորից պատվեց սառույցով ու ձյունով։

Պապին հասավ Ձյունիկի հետևից, մեծ թաթով բռնեց նրան և սառցե շղթաներով գամեց իր տեղում։

Եվ թող մնա նա իր տեղում՝ մինչև գարուն։

ԳԱՅԱՆԵ ՄԱՆՈՒԿՅԱՆ

(Երևանի Ն. Կ. Կրուպսկայայի անվան դպրոցի 8-րդ դաս. աշակերտուհի)



# ՄԵՐ ԱՎՏՈՄԵՔԵՆԱՆԵՐԸ

Է. Գ. ՎԱՅՆՐՈՒԲ

*(Մինսկի ավտոգործարանի ինժեներ)*

Դուք ուզում եք անցնել մյուս մայթը, բայց լուսաֆորի կարմիր գույնը նախազգուշացնում է՝ փողոցն անցնել չի՛ կարելի: Դուք կանգ եք առնում և ակամայից նայում ավտոմեքենաների հոսանքին: Ահա շողշողալով թռչում է «Վոլգա»-ն, իսկ նրա հետևից՝ «Չայկա»-ն, «Մոսկվիչ»-ը, «Պոբեդա»-ն, «ԶԻԼ»-ը... Հապա ավտոբուսնե՞րը: Իսկ եթե դուրս գաք քաղաքից, կտեսնեք բեռնատար ավտոմեքենաների շարասյուներ:

Հարյուր հազարավոր ավտոմեքենաներ են սլանում մեր ճանապարհներով ու փողոցներով: Դժվար է հիմա գտնել մի մարդ, որին այս կամ այն չափով չծառայի ավտոմեքենան:

Իսկ ինչպիսի՞ն է եղել ավտոմեքենան անցյալում և ինչպիսի՞ն կլինի ապագայում:

Դե, սիրելի բարեկամներ, եկեք միասին լինենք թանգարաններում, գործարաններում, գիտահետազոտական ինստիտուտներում և ուղևորություն կատարենք հայրենի երկրում:

## ՆԱԽԱՀԱՅՐԸ

Ավտոմեքենայի նախահայրերից մեկը «ինքնագնաց սայլակն» է, որը պատրաստվել է դեռևս 16-րդ դարում: Սայլակում կարող էին նստել երկու հոգի և լծակի ու շարժիչների օգնությամբ առաջ շարժել:

Ռուսաստանում այդպիսի «ինքնագնաց սայլակներ» պատրաստում էին ճորտերը: Մեքենագետ Կուլիբինը շատ բանով կատարելագործեց այդ սայլակը:

Իսկ ի՞նչ բան է այս տարօրինակ սայլը: Առջևում ունի պղնձե կաթսա ու հնոց, իսկ հետևում՝ երկար ծխնելույզներ: Սա հենց շոգիով գնացող առաջին ավտոմեքենան է: Միայն շարժիչը վառելիքի հետ միասին կշռում է երկու տոնն: Բայց նախորդի համեմատությամբ սա մի մեծ քայլ առաջ էր (նկ. 1):

Այն ժամանակվա տեխնիկայի հրաշքը 1830 թվականին վարպետ Յանկևիչի հնարած մեքենան էր, որի արագությունը մեկ ժամում հասնում էր 30 կիլոմետրի:

Թանգարանում պահվում է նաև առաջին բեռնատար ավտոմեքենան՝ «Շոգեփիչը», որի հեղինակն էր ուրալցի մեքենագետ Ամոս Չերեպանովը:

Առաջին ավտոմեքենաները, չնայած իրենց բոլոր կատարելագործումներին՝ շատ անհարմար էին: Անհրաժեշտ էր ուրիշ շարժիչ, ավելի հզոր, բայց փոքր չափի: Պետք էր վերացնել վտանգավոր հնոցըն ու կաթսան:

Երևան եկան ֆրանսիացի Լենուարի և գերմանացի Օթթոյի գազաշարժիչները: Նախորդների համեմատությամբ սրանք գրեթե առավելություն չունեին: Եվ միայն ռուս գյուղացի Դուբինին եղբայրների շնորհիվ հնարավոր եղավ ստեղծել ներքին այրման շարժիչներ: Այդպիսի շարժիչ աշխարհում առաջին անգամ պատրաստեց մեքենագետ Կոստովիչը 1884 թվականին, Պետերբուրգում: Այնտեղ կային ժամանակակից շարժիչների գրեթե բոլոր մասերը: Հզորությունը հասնում էր 80 ձիաուժի, որն այն ժամանակ չլսված բան էր:

1



## ԱՌԱՋԻՆ ՄՐՑԱՎԱԶՔԸ

Բոլորին հայտնի է, որ բենզինի շարժիչը շոգեշարժիչից ավելի լավ է: Բայց գործարանատերերը դեմ էին դրան: Նոր շարժիչների առավելությունն ապացուցելու համար 1894 թվականին տեղի ունեցավ ավտոմեքենաների առաջին մրցավազքը, որին մասնակցում էին տարբեր տեսակի 102 ավտոմեքենա, այդ թվում շոգիով աշխատող՝ ընդամենը... երկու: Մեկ տարի հետո բենզինի շարժիչների արագությունը հասցրին մեկ ժամում 24.5 կմ և հաղթանակ տարան: Սակայն մի շարք երկրներում կալվածատերերը, ձիասպորտի ղեկավարները և հոգևորականությունը գրոհի անցան ավտոմեքենաների վրա: Վարորդները ենթարկվում էին պատասխանատվության, որովհետև անցորդների շորերը կեղտոտում էին ցեխաջրով: Անգլիայում ավտոմեքենայի առջևից կարմիր դրոշակով մարդ պետք է




քայլեր և զգուշացներ մարդկանց (նկ. № 2): Ավտոտերերը ստիպված էին դիմել խորամանկության: Մեքենայի առաջամասին հարմարեցնում էին ձիու խրտվիլակ: Հենց որ ոստիկան էր երևում, վարորդը լռեցնում էր շարժիչը և բռնում սանձերից: Խնդրեմ, ոչ թե ավտոմեքենա է, այլ կառք:

## ԱՎՏՈՄԵՔԵՆԱՆԵՐԻ ԾԱՂԿՈՒՄԸ

Թեև ռուսների ստեղծած մեքենաները միջազգային մրցություններում հաղթանակ էին տանում, Ռուսաստանը գրեթե չուներ իր սեփական ավտոմեքենաշինությունը:

Հոկտեմբերյան ռևոլյուցիայից հետո, 1918 թվականին Վ. Ի. Լենինի նախաձեռնությամբ Մոսկվայի կիսաքանդ «ԱՄՕ» (այժմ «ԶԻԼ») գործարանում սկսեցին ավտոմեքենա հավաքել:

1924 թվականի նոյեմբերի 7-ին գործարանից դուրս եկան սովետական առաջին 10 ավտոմեքենաները:

Հնգամյակների ժամանակ կառուցվեցին Գորկու, Յարոսլավլի վիթխարի գործարանները: Հետագայում ավտոգործարաններ կառուցվեցին Բելոռուսիայում, Ուկրաինայում, Վրաստանում և այլ ռեսպուբլիկաներում:

## ՀԱՅՐԵՆԻ ՃԱՄՓԱՆԵՐՈՎ

Մեր տրամադրության տակ է երկնագույն «Վոլգա»-ն: Սլանում ենք մեկ ժամում 140 կիլոմետր արագությամբ: Ներսում տաք է, հարմար, մաքուր, չկա ոչ մի ցնցում, լսում ենք հաճելի երաժշտություն:

Դիմից գալիս է «ԶԻԼ—130»-ը: Այս մեքենան փորձարկման մեջ է: Հզորությունը կազմում է 148 ձիաուժ, արագությունը չորս տոնն բեռով հասնում է մեկ ժամում 80 կմ:

Մեկը մյուսի հետևից շտապում են սառնարան-ավտոմեքենաները:

Կանգառին են մոտենում ավտոբուսները: Նրանցից մեկը չի տարբերվում տրոլեյբուսից: Այնտեղ միաժամանակ կարող են նստել 122 ուղևոր: Մնում է ավելացնել էլեկտրաշարժիչ և այն կդառնա տրոլեյբուս:

Եկեք հիմա նստենք «Չայկա», որի հզորությունը հասնում է 200 ձիաուժի, իսկ արագությունը՝ 160 կմ: «Չայկա»-ով էլ կգնանք դեպի յոթնամյակի կառույցները:

Ահա գտնվում ենք Սարբայի վիթխարի հանքերում: Այստեղ աշխատում են բելոռուսական «ՄԱԶ—530»-ները, որոնցից յուրաքանչյուրը վերցնում է 40 տոնն հանույթ: Քիչ հեռու կանգնած է նրա հայրենակիցը՝ «ՄԱԶ—525»-ը, որի տարողությունը 25 տոնն է: Այստեղ աշխատում են նաև 6 և 12 տոննանոց շատ բեռնատարներ:

Եկեք կանգ առնենք չորս տեղանոց «Զապորոժեց»-ի մոտ: Սրա արագությունը ժամում հասնում է 80 կիլոմետրի: Այս մեքենան ջրի կարիք չի զգում, որովհետև շարժիչը զովացվում է օդով (նկ. № 3):

Իսկ սրանք փոքր-ինչ անսովոր տեսք ունեն, չկան այն տեղերը, որ սովորաբար շարժիչն է լինում: Նրանցից մեկը կանգ է առնում: Վարորդը




դուրս է գալիս խցիկից և սեղմում լծակը: Երեք տեղանոց գեղեցիկ խցիկը դանդաղ թեքվում է առաջ, և երևում է շարժիչը, որը տեղավորված է վարորդի նստատեղի տակ: Մինսկի գործարանի այս մեքենաները դեռ քննություն են տալիս: Շուտով մեր գործարանը կթողարկի այդ բեռնատար-

ներ, որոնք պետությանը կտան միլիոնավոր ռուբլիների խնայողություն:

Մեր ուղևորությունը վերջանում է գիտնականների և կոնստրուկտորների մոտ:

## ԱՊԱԳԱՅԻ ԱՎՏՈՄԵՔԵՆԱՆԵՐԸ

Գիտնականներից մեկն ասում է, որ ժամանակակից ավտոմեքենաները շատ թերություններ ունեն: Շարժիչները բարդ կառուցվածք ունեն և կարճատև կյանք, վառելանյութի լրիվ չայրման հետևանքով կեղտոտվում է օդը: Ժամանակակից գիտությունն ու տեխնիկան մեզ հնարավորություն են տալիս ստեղծել ավելի կատարելագործված մեքենաներ:

Գիտաշխատողը մեզ ցույց է տալիս մի գեղեցիկ ավտոմեքենա և ասում, որ այն պետք է աշխատի էլեկտրակայաններում ստացվող միջուկային վառելանյութով: Մեկ ուրիշ մեքենայի մասին ասում է, որ պետք է աշխատի էլեկտրականությամբ, իսկ հոսանքը կվերցնի ուղղակի ճանապարհով ձգվող կաբելից:

Մեծ աշխատանք է տարվում գազատուրբինային շարժիչներ ստեղծելու ուղղությամբ: Այն պարզ է իր կառուցվածքով, փոքր՝ չափով ու կշռով և ավելի հզոր:

Իսկ երեք տոննանոց այս տարօրինակ ավտոմեքենան երկու անիվ ունի: Դա նրան հնարավորություն է տալիս մեծ արագությամբ սլանալ նույնիսկ անտառային արահետով (նկ. №4):

Ահա ապագայի մի ավտոմեքենա ևս: Սա անիվ չունի և ճանապարհի կարիք չի զգում, առանց արգելքների կսլանա ձյունապատ տարածությունների ու լճերի վրայով:

Կստեղծվեն 200 տոննանոց ավտոմեքենաներ:

## 10-ԻՑ ՄԻՆՉԵՎ 856 ՀԱԶԱՐ

Մի ժամանակ մեր երկրում մեկ ավտոմեքենա պատրաստելու համար հարկավոր էր 5—6 տարի: Իսկ յոթնամյակի վերջում յուրաքանչյուր 40-րդ վայրկյանին մեկ ավտոմեքենա է արտադրվելու: Դա նշանակում է, որ մեր երկիրը օրական կթողարկի 2377 ավտոմեքենա, իսկ տարեկան՝ 856 հազար:

Մեր ավտոմեքենաները մարդուն հիացնում են իրենց գեղեցկությամբ ու հարմարավետությամբ: Իզուր չէ, որ Բրյուսելի համաշխարհային ցուցահանդեսում հայրենական ավտոմեքենաների մի շարք մոդելներ արժանացան ամենաբարձր գնահատականի՝ ոսկե մեդալի:

Կոնստրուկտորներն աշխատում են, որպեսզի մեր ավտոմեքենաները լինեն ավելի գեղեցիկ, հարմարավետ, արագընթաց, հեշտ ղեկավարվող և ավելի շատ բեռ տանեն: Նրանք ստեղծում են այնպիսի հարմարանքներ, որպեսզի ավտոմեքենաները ղեկավարվեն ավտոմատներով և վթարներ չտան:

Խմբագիր՝ ՍԱՂ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

**Խմբագրական կոլեգիա՝**
ԲԱԲԱԽԱՆՅԱՆ Վ., ԳՐԻԳՈՐՅԱՆ ԱԼ. (գլխավոր խմբագրի տեղակալ), ԵՍԱՅԱՆ Վ., ԽԱՆՋՅԱՆ ԳՐ., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ Լ., ՀՐԱՉՅԱՆ Խ., ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ Թ. (պատասխանատու քարտուղար), ՍԱՀԻՆՅԱՆ Ս., ՍՏԵՓԱՆՅԱՆ Ս., ՔԱԼԱՆԹԱՐՅԱՆ Վ., ՕՀԱՆՅԱՆ Ա.

„Пионер" на армянском языке. Адрес редакции: Ереван, ул. Кармир Банаки, № 41
Հասցեն՝ Երևան, Կարմիր Բանակի փողոց, № 41. Հեռախոսներ՝ 2—44—83, 2—59—06:

ՎՖ 00045 Պատվեր 1283 Տպաքանակ՝ 7450: Տպագրական 5 մամուլ: Ստորագրված է տպագրության 10/X 1961 թ.: ՀՍՍՌ Կուլտուրայի մինիստրության Պոլիգրաֆկոմբինատ, Երևան, Տերյան 91:
Գինը 20 կ.:



## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



Շապիկը՝
Նկ. ԱԼԵՔՍԱՆԴՐ
ԳՐԻԳՈՐՅԱՆԻ



# Ֆ. Լիստ

Երաժշտության մերթ նուրբ, մերթ հուզախռով ու անհանգիստ հնչյունները թևածում էին լեփլեցուն դահլիճում: Քար լռություն էր: Բոլորի հայացքները սևեռված էին բազմաթիվ ջահերի լույսերից շողշողացող դաշնամուրի կողմը: Այնտեղ նստած էր վտիտ, խիստ գունատ դեմքով մի փոքրիկ տղա:

Նրա բարակ, արտասովոր երկար մատների շարժումներից դուրս եկած կախարդական հնչյունները հուզել ու հմայել էին բոլորին:

Վերջապես հնչեցին երաժշտության վերջին ակորդները և մարեցին խորհրդավոր: Մի պահ շարունակվեց լռությունը, և հանկարծ ծափահարությունների որոտը ալեկոծեց դահլիճը:

Տղան կանգնել էր դաշնամուրի առաջ և փոքր-ինչ վախեցած հայացքով նայում էր հրճվանքից շողացող անծանոթ դեմքերին:

Հանկարծ, դահլիճով մեկ, ակնածանքի ալիք անցավ: Բոլորը շրջվեցին դեպի ալեզարդ մարդը, որը լայն քայլերով առաջանում էր դեպի բեմը: Նրա խոժոռ, կնճիռներով լի դեմքը հուզված էր:

— Բեթհովենը...

Ծափահարությունները դադարեցին:

Բեթհովենը, երաժշտության տիտանը, մոտեցավ փոքրիկ տղային և խոնարհելով իր վեհ գլուխը, համբուրեց նրա լայն ճակատը: Հանճարի այդ համբույրը ասես բարեմաղթություն եղավ 11 տարեկան Լիստի համար, երբ նա առաջին համերգներն էր տալիս Վիեննայում: Բեթհովենը կարծես իր ներքնաշխարհի կրակից ցայտող մի շիթ փոխանցեց հանճարեղ տղային:

Բացառիկ երաժշտական ընդունակություններով օժտված Ֆերենցը վաղ մանկությունից կլանել հունգարական ժողովրդական երաժշտությունը, և այդ երաժշտության հուզաթաթավ մեղեդիներից ու բոցբոցուն ռիթմերից սնվեց ու մեծացավ հախուռն անհատականության տեր, ստեղծագործող ու արտիստ Լիստը:

Բայց կյանքը Լիստի համար առանց դժվարությունների չէր, այլ լի էր խոչընդոտներով: Հունգարիայում ծնված լինելով, նա իր կյանքն անցկացրեց Գերմանիայում, Փարիզում: Համերգային շրջագայությունների ընթացքում Անգլիայից անցավ Թուրքիա, Մադրիդից՝ Կոպենհագեն, Իտալիայից՝ Ռուսաստան: Ամենուրեք իր հայացքներով ու գործունեությամբ նա բախվեց բարձր հասարակության հետ, բորբոքվեց ու ցնծաց 1830 թ. ռևոլյուցիայի օրերին, որից հետագայում հիասթափվեց ու առանձնացավ կյանքից՝ հագավ կրոնավորի զգեստ:

Լիստը եղավ ծրագրային սիմֆոնիկ երաժշտության հիմնադիրը, այսինքն՝ այնպիսի սիմֆոնիկ ստեղծագործության, որն ունի իր գրական ծրագիրը և դրանով իսկ հեշտացնում է նրա երաժշտական բովանդակության ըմբռնումը:

Լիստի 13 սիմֆոնիկ պոեմները՝ «Տասսո», «Պրոմեթևսը», «Պրելյուդները», «Ֆաուստ», «Դանթեն» և մյուսները համաշխարհային ծրագրային սիմֆոնիկ երաժշտության գլուխգործոցներից են:

1846 թ. Լիստը եղավ իր հայրենիքում, և հարազատ մեղեդիները նրա մեջ ծնունդ տվեցին հունգարական այն 19 ռապսոդիաներին, որոնք համաշխարհային ճանաչում են վայելում: Հրաշալի դաշնակահարի ձիրքը օգնեց նրան ստեղծելու դաշնամուրային բազմաթիվ սքանչելի գործեր:

Մինչև իր կյանքի վերջը (1886 թ. հուլիսի 30-ը) Լիստը մնաց մեծ ու անշահախնդիր արվեստագետ, ամբողջ էությամբ նվիրված երաժշտական հնչյունների մերթ ծիծաղախիտ, մերթ փոթորկահույզ ծովին, որի մեջ նա մարմնավորում էր մարդու խոհերն ու ձգտումները, նրա սրտի թրթիռները:

Հոկտեմբերի 22-ին լրացավ հունգարական մեծ կոմպոզիտոր Ֆերենց Լիստի ծննդյան 150 տարին:

Յ. ԲՐՈՒՏՅԱՆ

(Արվեստագիտության թեկնածու)


ՊԻՈՆԵՐ
ԲԱԺԱՆՈՐԴԱԳՐՎԵՑԵ՛Ք
և
ԿԱՐԴԱՑԵ՛Ք
ՊԻՈՆԵՐ
ամսագիրը
ԲԱԺԱՆՈՐԴԱԳՐՈՒԹՅԱՆ ՊԱՅՄԱՆՆԵՐԸ
12 ամիսը- 2 ռ. 40 կ.
9 ամիսը—1 ռ. 80 կ.
6 ամիսը—1 ռ. 20 կ.
3 ամիսը –60 կ.